

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ

## ՄԱՅՐԻԿԻՍ

Ո՞վ է կանչում ինձ, այն ո՞վ,
Մայրս է, անուշ իր ձայնով։
Ո՞վ է ասում ինձ՝ ձագուկ.
Մայրս է, շնչով իր տաքուկ։

Գիտեմ, բարի են, բարի,
Բոլոր մայրերն աշխարհի,
Բայց աշխարհում ինձ համար
Մի աշխարհ կա ու մի մայր։

## ՈՂՋՈՒՅՆ

Ողջույն ասենք ձնծաղիկին
Եվ կակաչին ասենք ողջույն,
Մեր ծիտիկին, մանուշակին,
Ալվան ծաղկին ասենք ողջույն...

Ողջույն ասենք գարնան ցողին
Ու մայր հողին ասենք ողջույն,
Ողջույն գարունն արարողին,
Լույսի շողին ասենք ողջույն։

Ողջույն ասենք մանուկներին,
Մեծ ու փոքրին ասենք ողջույն,
Մեր մայրերին, մեր քույրերին,
Իրենց տոնին ողջո՜ւյն, ողջո՜ւյն...

Նկ. Ա. Լ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
# №: 3 • 1983

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ



Շապիկի 1-ին էջը՝
ՄԻՀՐԱՆ ՔԵՁՕՂԼՅԱՆԻ

Շապիկի 4-րդ էջը՝
ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Մեր ընտանիքում հաց առնելու պարտականությունն ինձ վրա էր դրված: Դա հիմա է այդպես սովորական հնչում: Ի՞նչ է որ, գնացիր հացի խանութ, որ հարևան շենքում է, մոտեցար բաց թարեքներին և ահա խնդրեմ՝ գնիր հացը: Ուրիշ էր, սակայն, այն օրերին: Պատերազմից հետո էր, քարտերը նոր-նոր էին վերացել, արդեն կարելի էր գնալ ու ազատ հաց գնել: Բայց մեծ հերթեր էին: Սարսափելի...

Առավոտ ծեգին, ժամը ուղիղ յոթին, ինձ արթնացնում էր հացի անուշ բուրմունքը, որ ըմբոշխնում էի դեռ չարթնացած՝ երազիս մեջ: Իմ յուրատեսակ զարթուցիչն էր դարձել հացի բույրը... Սկզբում հեռու-հեռավոր, գրեթե անհասանելի, ապա հետզհետե մոտիկ-մոտիկ, գալիս ու ռունգերս էր խուժում թարմ հացի թանձր ու առինքնող հոտը, և դեռ քընաթաթախ վեր էի թռչում տեղիցս, հապշտապ հագնվում, դեմքս շփում սառը ջըրով ու անապարանոք վազում դեպի հարևան փողոցը, որտեղ քառակուսի, ընդարձակ բակում, չորս կողմից դեղնավուն տներով ճզմված հացի խանութն էր: Խանութի ելքը հարևան բակից էր, իսկ այս կողմից երևում էր միայն նրա վանդակավոր պատուհանը: Բարակ, նոսր ճաղերի արանքով բավական հեշտությամբ անցնում էր հացի բոքոնը. խանութը փոքր էր և ի վիճակի չէր տեղավորելու այդքան բազմություն: Սովորաբար, ութից հետո էին բերում հացը, թեև հսկայական հերթը կուտակվում էր նախօրոք՝ վաղ առավոտից: Կանանց հերթն առանձին էր, տղամարդկանցը՝ առանձին: Տղամարդկանց հերթն անհամեմատ փոքր էր լինում, դրա համար էլ մեր տանը հաց առնելու պարտականությունը ինձ վրա էր դրված: Հերթ կանգնած երեխաներն էլ քիչ էին, համարյա միշտ նույն կազմը, հինգ մատի պես ճանաչում էի բոլորին: Ու մինչև կերևար հացի մեքենան, հերթը կամաց-կամաց ցաքուցրիվ էր լինում: Կանայք առանձին խմբեր կազմելով, ըսկըսում էին բամբասել, խոսում էին բարձրաձայն, առանց մեկը մյուսին գիջելու, միմյանց խանգարելով: Տղամարդիկ ծանրծանր գլանակ էին քաշում, ստեպ-ստեպ ցածրաձայն բառեր փոխանակելով միմյանց հետ: Մենք՝ փոքրերս, որ ընդամենը վեցն էինք, շտապում էինք մետաղյա ավտոտնակի հետևի մեր սիրած հարմարավետ՝ անդորր անկյունը և սկսում



Նկ. ՆՈՐԱ ՀԱԿՈԲՅԱՆԻ

խաղալ ավճալուրի: Բոլորն ինձնից մեծ էին, բայց ես նրանց բոյին էի, այդ իսկ պատճառով թվում էի նրանց հասակակից: Մենք հերթով իրար էինք փոխանցում եգիպտացորենի խոշոր հատիկներով լի շորե տոպրակը և զիլ ձայնով խմբով հաշվում, թե ով քանի անգամ կկարողանա «թշիկով», այսինքն աջ ոտնաթաթի ներսի կողմով անվրեպ օդ թռցնել այն, չթողնելով վայր ընկնի: Բայց որքան էլ դյութիչ լիներ խաղը, մեր աչքից չէր վրիպում հացով լի ֆուրգոնի գալը: Բավա-

# ՀԱՑԸ

ՌՈՒՇԱՆԳԻ ՌՈՒԺԻՆԱՇՎԻԼԻ



կան էր նկատեինք տների արանքով առաջ շարժվող փուրգոնը, որպեսզի հասցնեպ, առանց վայրկյան իսկ կորցնելու, բազմության մեջ փուրգոնի համար ճամփա բանալով, սուրալինք վարորդին օգնելու: Ի դեպ, խառնիխուռն բազմությունը, զինվորական հրաման ստացածի պես ձգվում էր՝ ընդունելով որոշակի ձև: Հերթում կարգ պահպանողները, որքան էլ ձեռներեց ու ճարպիկ լինեին, այնուամենայնիվ առավելություն էին տալիս հնչեղ, աղմկալի ձայներին: Իսկ մենք, ետ ընկրկելով, մեր ետևից բերում էինք փուրգոնը այնքան, մինչև նա կիպ մոտենար պատուհանին: Վարորդը, խցիկից դուրս գալով, ծանրորեն, իբր անկամ, բազմանշանակ շորորալով քայլում էր դեպի փուրգոնի դռները, ասես հաճույք ստանալով բազմության սևեռուն և անհամբեր հայացքներից: Չգիտես ինչու, նա կիրզե սապոգների քիթը խոթում էր ետևի անվադողերի մեջ, ապա ահագին ժամանակ բաց թողնում դռնակը և վերջապես սկսում բեռնաթափումը կլորավուն, դեռևս տաք-տաք, բուրումնալից նորահացի, որ գայլի ախորժակ էր առաջացնում բոլորիս մեջ: Բեռնաթափում էր դանդաղ՝ բոքոն-բոքոնի ետևից անցկացնելով ցանցածողերի արանքով, որի ետևում նրան էին սպասում վաճառուհի Զինան և բեռնակիր Կոլյան: Զինան հացը վարորդի ձեռքից ընդունում էր զգուշորեն, ասես վախենալով վայր գցել, բայց Կոլյան, ոնց որ պարսատիկով, հացերը նետում էր որբուկի պես մերկ ստելաժների վրա, իր ճարպկությամբ և անսովոր ճշգրիտ նշանառությամբ խրոխտ:

Բեռնաթափումը տևում էր անվերջանալի երկար ու տաղտկալի: Ես կուլ էի տալիս առատ թուքս, և որպեսզի քաղցս մոռանամ, սկսում էի հաշվել հացերը:

«Ինչքա՞ն է»,— հարցնում էր Զինան վարորդին: «Եսիմ,— ուսերն էր թոթվում վարորդը,— քեզ պետք է, դո՛ւ հաշվիր»:

Բազմությունն սկսում էր ալիք տալ, ոմանք հայհոյում էին դանդաղկոտ վարորդին, մյուսները՝ ծանրաշարժ Զինային, խնայում էին միայն երիտասարդ Կոլյային: Տանջալից սպասումը դուրս էր հորդում ափերից, դառնում հուզմունք ու բարկություն, հուզմունքը խմորվում, ելք էր փնտրում ու գտնում այն:

— Դո՛ւք դատարկեք, գլխիս քննադատներ եք հավաքվել, հլը ինձ նման աշխատեցեք, նոր կտեսնենք և հետո, ես իսկի էլ պարտավոր չեմ բեռնակիր լինել, ես պետք է միայն քեղին պտտեցնեմ և ոչ թե այստեղ-այնտեղ հաց խոթեմ,— ինքն իրեն ուտում էր վարորդը:

— Բայց, գուցե իսկապես օգնենք նրան, հը՞,— բարձր, որպեսզի բոլորը լսեն, ձայնեց հեռակներով մի մարդ, որի ձախ անդրավարտիքը հենց ազդրի մոտ էր ծալված:

— Դե օգնի՛ր, էլի՛,— խայթեց բեղավոր, հաստլիկ մի կին, որը բոլորից սատիկ էր կշտամբում:

— Եվ կօգնեմ...

— Քեզ ի՞նչ եղավ, այ կնի՞կ, խելքդ քամուն տվի՞ր, ի՞նչ է, չե՞ս տեսնում, որ մարդը հաշմանդամ է, դու ավելի լավ կլինի քո ճարպերը մի քիչ տորոխես,— հաստլիկ կնոջ վրա հարձակվեց գլխաշորով մի պառավ։

Ու սկսվեց...

Բարձրացավ կանանց միահամուռ աղմուկ-աղաղակը, գոռում-գոչյունը, մինչև իսկ բաժանվեցին թշնամական բանակների, տղամարդիկ աշխատում էին հանդիմանել նրանց, բայց անհաջող։ Մոռացվեց անգամ, թե ինչից սկսվեց վեճը, մոռացան անգամ հացի գոյությունը։ Հերթը երկփեղկվեց, կորցրեց ձևը, ափերից ելավ, քշվեց-կորավ։ Մենք՝ փոքրիկ տղաներս, հետաքրքրասիրությամբ, զարմանքից չռված աչքերով, ականդետ նայում էինք կանանց։

—Իսկ դո՞ւք, դուք ինչո՞ւ եք բերաններդ բաց կանգնել։ Հենց դուք եք, որ պետք է օժանդակեք վարորդին, ծույլ անպիտաններ,— վրա պրծավ մեզ ջահել մի կին։

— Օգնե՜լ, չէ մի՜... Նրանց թողնես միայն ավճալուրի խաղան, ուրիշ բան պետք չեն,— մեր կողմը շրջվեցին կանայք։

Այժմ արդեն ուշադրության կենտրոնում մեր խումբն էր։ Մեզ այդ հանկարծակիի բերեց, շփոթված հայացքներ փոխանակելով, նայում էինք կանանց։

— Ի՞նչ եք վրա տալիս, հը՞, վերջիվերջո երեխաներ են, դեռ այնքա՞ն աշխատեն կյանքում,— մեզ պաշտպանել փորձեց քիչ առաջվա պառավը։

— Ո՞վ, մե՞նք ենք երեխա,— վիրավորվեց մեզնից ամենաավագը՝ Վալիկոն, — լսո՞ւմ եք, տղաներ, ինչպե՞ս են մեզ անպատվում։

Եվ իրոք, մեզանից և ոչ մեկը չէր կարող կուլ տալ այդ վիրավորանքը։ Արյունը գլխներիս խփեց։ Մեզանից ամեն մեկը իրեն իսկական տղամարդ էր համարում։ Եվ առանց ուշացնելու թռանք դեպի ֆուրգոնը։

Վարորդն ընդհատեց բեռնաթափումը և նենգ քմծիծաղով սկսեց ծխել իր հոտած չիբուխը՝ թու հա թու անելով։ Մի ակնթարթում թռանք ֆուրգոնի թափքը՝ եւ հրեցինք շփոթմունքից կարկամած վարորդին։ Ու հացը, ձեռքից ձեռք թռչելով, անցնում է վարորդի քթի տակով և ընկնում ուղիղ Կոլյայի ձեռքերի մեջ, որն ավելի արագությամբ ծանրացող թարեքների վրա է նետում հացը։ Տաք-տաք էր այն, անողորկ ու դրճողրճան։

Աննովոր աշխատանքից մենք շուտով հոգնեցինք, թևներս պոկվում էին, ուսերս ցավում, բայց ոչ մեկս ցույց չէինք տալիս այդ, ընդհակառակը եռանդով շարունակում էինք մեր գործը։

Իսկ հերթը գոհունակ աղմկում էր։ Վարորդն ի վերջո սթափվեց, մի պահ ինքն էլ իրար անցավ մեզ միանալու համար, բայց քանի որ մեր ամուր շղթայում նրա համար տեղ չգտնվեց, նա այդպես էլ մնաց իր չիբուխի հետ, որ կպել-մնացել էր վայրի շրթունքին։

Ֆուրգոնը դատարկվեց։ Քրտինքից կարմրատակած վայր թռանք, ձեռքներս դողում էին, մկաններս ձգվում, ձեռնափերս՝ այրվում...

Բայց մենք հպարտ ու երջանիկ էինք։ Ծտկելով մեր ցավող ուսերը, պատկառանքով, կարծես ոչինչ չէր պատահել, շարժվեցինք դեպի հերթում պահած մեր տեղերը։

Այդ ո՞ւր, տղաներ, ո՞ւր, ա՞յ ժողովուրդ, եկեք դրանց առանց հերթի թողնենք, — դեպի մեզ ոստնեց հաշմանդամը։

— Ոչի՛նչ, ոչի՛նչ, մենք կկանգնենք, — զատ-զատ, բայց համերաշխ ու միաձույլ հրաժարվեցինք մենք։

— Առանց հերթի՛, առանց հերթի՛, — ճանապարհ հարթեցին կանայք՝ պատուհանի մոտ տեղ ազատելով մեզ համար։

Տղամարդիկ մեզ առաջ հրելով տարան հասցրին մինչև մեկեն դատարկված տարածությունը։ Նսեմացած ու մի տեսակ ընկպաստացած վարորդը հապշտապ մտավ խցիկն ու բաց թողեց շարժիչը։ Ոչ մեկը նրա կողմը չնայեց, և մենք, մեզ համար ճամփա բացող բազմության միջով, դանդաղորեն առաջ շարժվեցինք՝ հաճելիորեն ծանրաբեռնված հացով ու հոգնությամբ։

Լավ եմ հիշում, այն հացի համը ուրիշ էր, անկրկնելի։ Այլևս երբեք չճաշակեցի նման հաց...

Վրացերենից թարգմ.՝
Ա. ԲՈՍՏԱՆՋՅԱՆԻ

МԻՔԱՅԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ՏԱՔ ՈՒ ՊԱՂԻՆ ԴԻՄԱՑԻՐ

Մի կապուտակ մանուշակ,
Գարնան գալը իմացել,
Գլուխն հանել, ժայռի տակ
Անուշ բույր է տարածել։
Տուն է շինել տերևից,
Որ թերթերը չմրսեն,
Աստղերն անգամ վերևից
Ուր լինելը չեն տեսել։
Ու բուրո՛ւմ է, բուրո՛ւմ է,
Ինքը չի էլ երևում,
Քամին մոտից սուրում է,
Տերևները երերում։
Ոչ ոք տեղը չգիտե,
Ոչ ոք նրան չգտավ,
Միայն մեղուն ոսկեթև,
Եկավ ծաղկի մեջ մտավ։
Չի վախեցել ճամփեքից,
Անցել է դաշտ ու անտառ,
Անցել բարձր սարերից,
Որոնել է ու գտավ։



# ՈՐՈՆՈՒՄ ԷՐ ՈՒ ԳՏԱՎ

Բողբոջիկը մի աչքով
Նայեց վերև երկնքին.
— Ինչքան մե՛ծ է, ինչքան խո՛ր,
Բա որ փլվի՞ իմ գլխին։
Բավական չէ, որ մեծ է,
Ամպերով էլ ծանրացավ,
Կորավ կապույտ երկինքը
Ու ծայրեծայր սևացավ։
Ա՛յ, բողբոջիկ, ա՛յ վախկոտ,
Յող ու շաղից աչքդ թաց.
Ամպի կայծակ-որոտից
Սիրտդ ինչպե՛ս թպրտաց։

Արմատն հողում ամաչեց.
— Բողբո՛ջ,— ասաց,— ամրացի՛ր.
Թե ուզում ես կանաչել,
Տաք ու պաղին դիմացիր։
Չոփ-չոփ արա, անուշի՛կ,
Անձրևից մի՛ վախենա,
Թող շորերիդ թավիշին
Փոշու հատիկ չմնա։

Լսեց բողբոջն ու կրկին
Կայծակն աչքի մեջ շողաց.
Անվախ նայեց երկնքին,
Եվ սրտիկը չդողաց։

Արմատն ասաց՝ հասկացավ.
Որդին գիտի մոր լեզուն։
Ճյուղին այնպես ամրացավ,
Ջուր է քամին գազազում։

Լուսաբացին՝ ջինջ արև,
Կապույտ երկինք, բարի լույս։
Տեսե՛ք, կանաչ մի տերև
Բողբոջից է ելել դուրս։

ՆԿ. ԱՆԴՐԱՆԻԿ ՆԻԼԻԿՅԱՆԻ



ՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

# ՎԵՐՋԻՆ ԱՔԱՂԱՂԸ

Կ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Վեներան զիլ ձայնով իրենց գոմի կտուրից կանչեց.

— Ղուշի՛կ, արի՛ թվաբանության խնդիրը լուծենք:

— Մի քիչ հետո՛...— ես էլ մեր գոմի կտրից գոռացի:

— Չէ՛, շո՛ւտ արի, շո՛ւտ...

Միասին էինք դասերը պատրաստում: Ես գիտեի իմ գնալու ժամը, բայց եթե կանչում է, ուրեմն արտակարգ բան կա: Փոշի բարձրացնող ճանապարհներով վազեցի, վախեցնելով չափարատակերին քուջուջ անող հավերին: Դռան մոտ Վեներան ինձ էր սպասում:

— Հորաքրոջս տղան եկել է: Համ էլ... նազուկ ենք թխում,— ուրախ-ուրախ վրա տվեց նա:

Նրա հորաքրոջ տղան նկարիչ էր, իսկ ես տարված էի նկարչությամբ: Բոլոր ժամերին մատիտով խզմզում էի տետրերի ու գրքերի կազմերին, նույնիսկ նստարանի վրա: Դասամիջոցներին կավիճը թռցնում էի ու խզմզոցներս շարունակում գրատախտակին: Նկարում էի արև, ծառեր, տերևներ և ծիտիկներ: Մեր նկարչության ուսուցիչ Մարտիրոս Տիրացվյանը հենց դասարան էր մտնում, դասամատյանը դեռ սեղանին չդրած, ինձ կանչում էր գրատախտակի մոտ.

— Ղուշի՛կ, այսօր ի՞նչ ենք նկարում:

— Ծառեր,— բարձրաձայն հուշում էին ընկերներս:

— Տերևներ...

— Կաղնու ճյուղեր...

— Տներ...

— Կով ու ոչխար...

— Շուն ու կատու...

Շարունակում էին աղմկել, մինչև ընկեր Տիրացվյանը զայրանում էր:

— Բավական է: Նկարում ենք այն, ինչ Ղուշիկն է ուզում:

Եվ թողնում էր իմ կամքին: Այսինքն՝ պետք է ծիտիկներ նկարեի: Ու շարում էի ամեն թռչուններին, որտեղ պատահեր՝ տանիքներին, օդում, ծառերի ամենաբարակ ճյուղերին, հեռագրասյուներին, աղբյուրների ակին ու առուների վրա:

Ընկեր Տիրացվյանը մանկավարժական այս մեթոդը կիրառում էր բոլոր դասարաններում: Իսկ եթե մի դասարանում նկարչական շնորհքով օժտված աշակերտ չկար, դասագիրքն էր բացել տալիս և պատահած նկարը մատնացույց անելով՝ առաջարկում նկարել: Մի անգամ ընկերներս համառորեն պահանջեցին, որ կա-

տու նկարեմ: Լսել էինք, որ ընկեր Տիրացվյանը կատու չի սիրում: Մի ուրիշ անգամ՝ գորտ, մուկ, դոդոշ, չղջիկ, մոդես, որոնցից նա զարհուրում էր: Դասն անցնում էր աշխույժ ու աղմկալից: Այդպիսի մի դասաժամի մեր աղմուկի վրա դպրոցի դիրեկտորը ներս մտավ և իմանալով եղելությունը, խիստ-խիստ ասաց.

— Ընկե՛ր Տիրացվյան, ծրագիր կա...

Թե ինչ կար ծրագրի մեջ, մեզ ամենևին չէր հետաքրքրում, բայց վերջին անգամ օձ նկարելուց հետո հրաժարվեցինք կենդանական աշխարհից և անցանք ավելի խաղաղ պատկերների: Հրաժարվեցի բոլորից, բացի ծիտիկներից:

Վեներայի նկարչական տետրի առաջին էջում երկու ծիտիկ էի նկարել ծառի հակադիր ճյուղերին նստած իրար փընտրելիս:

— Ես ու դու ենք,— դասի ժամին թաքուն ասացի Վեներային:

— Բայց մենք միշտ միասին ենք ու իրար չենք փնտրում:

— Մի օր կփնտրենք,— խորհրդավոր վրա բերեցի:

Իմ խորհրդավոր փսփսոցից Վեներան հուզվեց և որպես գաղտնիք շշնջաց.

— Իմ հորաքրոջ տղան նկարիչ է: Ալավերդում նրա պես նկարչության ուսուցիչ չկա: Որ մեր տուն գա, քեզ կծանոթացնեմ:

Եվ հիմա նրա հորաքրոջ նկարիչ տղան Ալավերդուց եկել է: Ես հուզվում եմ ու շփոթվում, երբ Վեներան հեռվից ցույց է տալիս.

— Ինքն է՝ Հենրիկը:

Հենրիկը հաղթանդամ, սև աչք-ունքով, սև խիտ մազերով երիտասարդ է: Կանգնած է թոնրի մոտ: Վեներայի տատը անուն հանած հաց ու նազուկ թխող է: Թոնրից տաք-տաք նազուկ է հանում, նազուկի բույրն՝էլ մի կողմից է շփոթեցնում ինձ:

— Գնանք թոնրի մոտ,— Վեներան քաշում է թևիցս:

— Չէ՛,— համառում եմ:

Մինչ մենք իրար քաշքշում էինք, Հենրիկն ինքը եկավ դեպի մեզ: Նա քայլում էր դանդաղ ու ծանր, գլուխը խոնարհած, մտամոլոր: Ես նայում էի ու մտածում, որ երևի բոլոր նկարիչները այդպիսին են՝ լուրջ, խոհուն, նույնիսկ տատի թխած նազուկը համտես չարեց:

Դռան շեմին մեծ թթենին էր՝ փարթամ, լայնատարած ճյուղերով, դեռ կանաչ, չգունափոխված տերևներով: Թթենու տակ սեղան էր դրված: Ես ու Վեներան այդ սեղանի վրա էինք դասեր պատրաստում: Վեներայի մայրը ուսուցչուհի էր, հայրը քարհանքի վարչությունում՝ հաշվապահ: Երկու փոքրիկ քույրերը դեռ դպրոց չէին գնում և ամբողջ օրը տատի փեշից բռնած պտտվում էին այգում, բակում, ճանապարհներին: Միշտ հեռու էին մնում մեզանից՝ կարծելով, թե կխանգարեն: Այն ժամանակ մենք չորրորդ դասարանում էինք, դասերով քիչ ծանրաբեռնված և ավելի շատ խաղում էինք, քան կարդում:

Հենրիկը թթենուն չհասած, կանգնեց, նայեց ծառին, բավականությամբ շոշափեց տերևները, իսկ ես, որ աչքս չէի կտրում նրա շարժումներից, տեսա, թե ինչպես ժպտաց, հայացքը կկոցեց արևից, հետո հայացքը իջեցրեց, սահեցրեց տերևների վրայով և կարծես նոր միայն նկատեց մեզ:

— Նստի՛ր,— ասաց Վեներան՝ աթոռը մոտեցնելով նրան: Հետո երբ Հենրիկը տեղավորվեց սեղանի մոտ, ավելացրեց. — Սա Ղուշիկն է, իմ ընկերուհին, ուզում ենք, որ մեզ նկարչության դասեր տաս:

Հենրիկը ժպտաց միայն:

— Ղուշիկը լավ է նկարում,— ավելացրեց Վեներան:

— Հա՞: Ի՞նչ է նկարում:

— Ծիտիկներ,— Վեներան իր նկարչական տետրը իսկույն բերեց դրեց սեղանին ու բացեց առաջին էջը, որտեղ իմ նկարած երկու ծիտիկներն էին,— էլի ունի, շա՜տ: Դոդոշ ու մուկ էլ է նկարում, օձ, կատու, ձիու քուռակ...

Հենրիկը ասես չէր լսում, խոհուն աչքերի ողջ ուշադրությամբ դիտում էր իմ նկարները: Հետո շարունակեց թերթել տետրը:

Իսկ այդ ժամանակ թոնրի կողքին իրարանցում էր: Տատը հացն ու նազուկները էր հանում, Վեներայի ուսուցչուհի մայրը խոնչայի վրա արագ-արագ փռում էր, արագ-արագ տանում թոնրատուն, փոքրիկ աղջնակները փոքրիկ ճիպոտներով քշում էին հավերին, որոնց անհրեւության վրա զայրանում էր տատը: Ավելի ակտիվ էին հարձակվում աքլորները: Այնքան ակտիվ, որ երեխաները չէին կարողանում նրանց հախից գալ: Մայրը ընտիպված միջամտեց՝ երկաթե մեծ շամփուրով, որով հացն էին հանում թոնրից, ուժեղ հարվածեց աքլորներին:

— Էս «փորձադաշտի ագրոնոմները» չափն անցան:

Գյուղում բոլորն էին աքլորներին «փորձադաշտի ագրոնոմ» անվանում: Այդ անունը ծխախոտագործուհի Սիրանն էր կնքել հենց գյուղամիջում հպարտորեն քայլող չգիտեմ ում աքլորին:

— Ոնց որ փորձադաշտի ագրոնոմը լինի, էնպես գոռոզ-գոռոզ է ման գալիս,— ասել էր Սիրանը, և բոլորը ուրախ ծիծաղել էին:

Փորձադաշտի ագրոնոմը քաղաքից էր եկել: Լայնեզր գլխարկով մի թմփլիկ տղամարդ էր, որ ման գալիս չգիտեիր քայլում է, թե վազում: Անընդհատ շարժման մեջ էր, անընդհատ գործի վրա, անընդհատ խոսում էր, ցույց տալիս, բացատրում: Երբեք չէր զայրանում, վատ խոսք չէր ասում: Նրա քաղաքավարությունը, պատահած, զայրացնում էր մարդկանց: Այդ օրն էլ Սիրանը զայրացած էր ագրոնոմի վրա ու ողջ գյուղի ներկայությամբ աքլորին նրա անվամբ կոչեց:

Վեներայի մայրը հավերին ու աքլորներին երկաթե շամփուրով քշեց գոմի կողմը, հեռացրեց բակից:

Հենրիկը դեռ լռությամբ իմ նկարներն էր դիտում, իսկ ես ամաչում էի, ամոթից կարմրել էի ու քրտնել, մտքիս մեջ կռվում էի Վեներայի հետ, որ ինձ համար նման վիճակ ստեղծեց: Վախենում էի Հենրիկի կողմը նայել և ակամայից հետևում էի թոնրի մոտ կատարվող իրադարձություններին: Տեսա, թե ինչպես ընդհանուրից ջոկվեց կարմիր մեծ աքլորը, դանդաղ պտտվեց թոնրի շուրջը, չփորձեց մոտենալ խռնչաներին, կարծես իր պատվից ցածր համարելով, ու դանդաղաքայլ, հպարտ կատարը բարձր պահած, սկսեց զբոսնել թոնրից մինչև թթենին ընկած տարածությունում:

— Ծիտիկներդ շատ են խեղճ,— վերջապես Հենրիկը խոսեց: Նա ինձ չէր նայում, դարձյալ նկարներն էր դիտում.— Ինչու՞,— և նորից լռեց:

Ես թուքս կուլ տվեցի առանց բառ արտասանելու, իսկ Վեներան բարձրաձայն ծիծաղեց.

— Բա ծիտիկը ուրախ կլինի՞... Ով հասնում է, քարով խփում է:

— Քո ծիտիկները շատ են տխուր,— կրկնեց Հենրիկը,— Վեներան իզուր է ծիծաղում, ծիտիկները էլ կարող են ուրախանալ: Հլա նայեցեք ծառերին,— նա կարծես աշխուժացավ և մատնացույց արեց պարտեզի ծառերն ու թփերը, որոնց վրա ծտերի մեծ ու փոքր երամներ էին նստած,— մի՞թե տխուր են նրանց ծլվլոցները: Լսեցե՛ք...

Եվ ինքը միանգամից փոխվեց, դարձավ լսողություն:

Ես տասնմեկ տարեկան էի: Իմ աշխարհը դեռ այս փոշոտ ու անկանոն փողոցներով գյուղն էր, չգիտեի նրան երիզող դաշտերից ու բլուրներից այն կողմ ինչ կա, ինչ քամի է խաղում այդ հեռավոր վայրերում, ինչ նժույգներ են վրնջում նրա կապույտներում ու ինչ հավքեր ծլվլում այնտեղ: Տասնմեկ տարի ես այս ծտերին էի տեսել և ունկնդրել նրանց ծլվլոցը, բայց հիմա կարծես առաջին անգամ էի տեսնում ու առաջին անգամ լսում:

— Նայեցեք այս աքլորին... Ի՛նչ հպարտ կեցվածք, ի՛նչ խրոխտ քայլվածք,— Հենրիկն ավելի աշխուժացավ, երբ նկատեց թթենու ստվերից մի փոքր հեռու կանգնած աքլորին,— ի՛նչ փետուրներ ունի...

Սեպտեմբերյան շռայլ արևի մեջ ավելի շքեղ էին դարձել աքլորի կարմիր փետուրները, կարմիր կատարը, սուր կտուցը, աքլորն ամբողջությամբ: Առաջին անգամ էի նկատում այդ փայլուն հպարտությունը, և իմ աչքում Հենրիկը բարձրանում էր, դառնում հեքիաթի հերոս՝ իրական ու անիրական, ամեն ինչ տեսնելու, ընկալելու մի գերմարդկային էակ:

— Աղջիկնե՛ր,— դիմեց մեզ,— գնացեք թոնրի մոտ: Գնացեք, ուր կամենում եք, ինչով կարող եք, զբաղվեք, միայն խնդրում եմ, ինձ քսան րոպե թողեք մենակ:

Մենք անխոս հեռացանք: Չգիտեմ, քսա՞ն րոպե անցավ, թե՞ երեսուն, գուցե ավելի, գուցե պակաս, զբաղվեցինք թոնրով, նազուկներով, հացով, նույնիսկ աղբյուրից մի քանի անգամ ջուր բերեցինք: Վեներան բլբուլ կտրած խոսում էր ու խոսում, իսկ ես լուռ էի: Խոսում էի, բայց ինքս ինձ հետ, ամեն ինչ նկատում էի, ամեն ինչ դիտում, ամեն ինչ լսում, բայց ուրիշ աշխարհից, ուրիշ աչքերով ու ականջներով: Իսկ վերջին անգամ, երբ

աղբյուրից վերադարձանք, տեսանք Հենրիկը իր հաստատուն ու ծանր քայլերով շրջում է բակում: Ես ու Վեներան, առանց իրար հետ համաձայնության գալու, վազեցինք դեպի թթենին, դեպի սեղանը, որի վրա նկարչական տետրն էր բացված վիճակում: Ճերմակ թղթի վրա աքլորի նկարն էր այնպես, ինչպիսին ցույց էր տվել Հենրիկը, ինչպիսին տեսանք այդ պահին՝ հպարտ կեցվածքով, վեհ քայլվածքով, գույների ողջ շռայլությամբ: Ես ակնապիշ նայում էի փետուրներին, որոնց մեջ ասես մոլորվել էր սեպտեմբերյան այդ օրվա արևը իր ողջ հրմայքով, և փետուրների միջից դուրս եկող ճառագայթները խնդուն ժպիտներով նայում էին աչքերին: Ի՞նչ հրաշք մատներ ունի այս Հենրիկը...

Աքլորի նկարը ես վերցրի, տարա մեր տուն: Թաքուն փորձում էի ընդօրինակել: Չհաջողվեց: Իմ նկարած աքլորները նորից տխուր էին, ինչպես իմ ծիտիկները: Երկար, շատ երկար էի ես նայում Հենրիկի աքլորին ու մտածում լավի, գեղեցիկի, վեհի ու հպարտության մասին, և իմ հոգում ծնվող այդ զգացմունքները արևոտ էին, արևագույն, արևային, ինչպես այն սեպտեմբերյան շքեղ արևը, որ նկարիչ Հենրիկը շռայլորեն ցրեց աքլորի կարմիր փետուրների մեջ:

Վեներան մոռացավ այդ նկարը: Իսկ ես այն պահեցի իմ ալբոմում: Այդ օրվանից գյուղի բոլոր աքլորների մեջ ես Հենրիկի աքլորն էի տեսնում, որոնք այն ժամանակ շատ էին ու հպարտորեն ճեմում էին փոշեբույր ճամփաներով, անցանկապատ բակերով, անարգել զբոսնում գոմերի կտուրներին:

Դպրոցն ավարտելուց հետո ես ընդունվեցի համալսարան: Ապրում էի հանրակացարանում: Սենյակի աղջիկներից յուրաքանչյուրը իր մահճակալի գլխավերևում մի նկար էր փակցրել: Մեկը՝ սիրած դերասանի, մյուսը՝ սիրած նկարչի, մեկը՝ ինչ-որ ամսագրից իրեն դուր եկած նկարը, մյուսը՝ բնության տեսարան: Միայն իմ մահճակալի գլխավերևն էր դատարկ: Հանրակացարանի պարետը հերթական ստուգման ժամանակ դիտողություն արեց, հետո կատակով ավելացրեց.

— Եթե ուրիշը չկա, վերցրու իմ լուսանկարը: Վաղը կարող եմ բերել:

Մյուս օրը ես բոլորից շուտ սենյակ եկա



և, մինչև աղջիկների վերադառնալը, հասցրի գլխավերևս ամրացնել Հենրիկի աքլորի նկարը: Սպասում էի, որ ընկերուհիներս ծաղրանքով կընդունեն:

— Այս ի՞նչ նորություն է,— դեռ դռան շեմքից նկատեց Սոնան,— այս ի՞նչ աքլոր է համարձակվել մեր կացարանը մտնել,— կատակի տվեց:

Սոնան հիացած էր:

Նկարը քննություն էր բռնել:

***

Քսանհինգ տարի է անցել: Քառորդ դար: Ես հիմա գիտեմ, թե մեր գյուղը երիզող դաշտերից ու բլուրներից այն կողմ ինչ կա, ինչ գետեր են հոսում այդ հեռավոր վայրերով, և արևը որտեղ է շռայլ, որտեղ ժլատ: Փոխվել է նաև մեր գյուղը:

Գյուղում ընտանիք չկա, որ հավ չըպահի: Գյուղում տուն չկա, որ այգի չունենա: Այգիները ցանկապատված են քարե պատերով ու հաստ տախտակներով: Քարե պատերի մի անկյունում թևավորների համար երկաթե ցանցերով մի փոքրիկ տեղ է առանձնացված: Գարնանը նրանց փակում են այնտեղ, ամեն օր ջուր ու կուտ տալիս, օրվա ձվերը հավաքում, մաքրում: Այդպես մինչև ուշ աշուն, մինչև բերքահավաքի վերջը: Եվ գարնանից մինչև ուշ աշուն խեղճ թևավորները ցանցերի արանքից են դիտում աշխարհի անցուդարձը: Չկան նաև նախկին թխսամայրերը, որոնք փոշիների մեջ հատիկ էին որոնում՝ մոլորված մի ցորեն կամ գարի, ու իրենց թխսային ձայնով կանչում ճուտիկներին: Հիմա ճտերը ամեն գարնան Օձունից են բերում՝ ավելի թմփլիկ, ավելի առողջ, բայց բոլորն էլ մի գույնի՝ սպիտակ կամ գորշ կարմրավուն: Այդ պատճառով գյուղական բակերում կամաց-կամաց վերանում են կարմիր աքլորներն ու փոփուլավոր հավերը: Սակայն տատիկներ կան, որ համառորեն թուխս են պահում, իրենց իմացած ձվերը դնում թխսի տակ, որոնցից դուրս եկող ճտերը նախկին աքլորների ու հավերի տեսքն ունեն:

Անցյալ տարի մենք այդպիսի երկու աքլոր ունեինք: Գարնանը մեր հավերի ձվերի համար հերթ էր: Գյուղի մյուս թաղերից տատիկներ էին գալիս մեր տուն, մորս հետ բանակցություններ վարում և կատարում ձվափոխանակություն իրենց թուխս նստող հավերի տակ դնելու համար:

Անցյալ տարի մենք երկու այդպիսի աքլոր ունեինք: Ձմռանը, ձյուն կտցահարելով, նրանք վայելեցին բակի ու այգու ազատությունը մինչև գարուն, մինչև ծաների ծաղկափթթումն ու այգու մշակությունը:

Գարնանային մի գեղեցիկ օր էր: Փոստատար Հրաչը օրվա թերթերը մեծ դարպասի մոտ տվեց մորս:

— Բա նամակ չկա՞, Հրաչ՛ ջան,— հարցրեց մայրս: Նա նամակի էր սպասում երկու շաբաթ առաջ զինվորական ծառայության մեկնած եղբորս որդուց:

— Չէ,— կտրուկ պատասխանեց փոստատարը:

— Բա էդքան նամակների մեջ ոչ մեկը մեզ վրա չի՞,— մայրս աղերսանքով նայեց նրան:

— Չէ՛, տիկի՛ն Սաթենիկ, ինձ չես հավատում, վերցրու ի՛նքդ ստուգիր,— փոստատար Հրաչը նամակների կապոցը ժպտալով մեկնեց մորս,— երկուսս էլ մի օրի ենք, տիկին Սաթենիկ, ոչ դու ես կարողանում կարդալ, ոչ՝ ես,— կատակի տվեց:

Փոստատար Հրաչը տարիքն առած մարդ էր: Հայերեն մի կերպ կարդում էր, իսկ ռուսերեն հասցեներով նամակները սրան-նրան էր տալիս՝ իմանալու տիրոջը:

Մայրս հուսահատ տուն մտավ, ասաց՝ էլի նամակ չկար:

— Տիկի՛ն Սաթենիկ, տիկի՛ն Սաթենիկ,— քիչ անց լսում ենք Հրաչի զըվարթ ձայնը հենց աստիճանների վրա:

Մայրս անմիջապես դուրս է գալիս:

— Տիկի՛ն Սաթենիկ, բա չես ասի՝ նամակ ունես: Բաժանեցի, մեկ էլ տեսնեմ թերթերի տակ մի նամակ: Մտածեցի՝ կաչկա տիկին Սաթենիկի թոռից է,— Հրաչն նամակը ձեռքին է, սպասում ենք, որ վերև բարձրանա, բայց նա կանգնել է երկրորդ աստիճանին և չի շարժվում:

— Առա՛ջ արի, Հրաչ՛ ջան,— մայրս ոտ ու ձեռ ընկած հրավիրում է:

— Չէ՛, տիկի՛ն Սաթենիկ: Ոտքերս ասում են՝ մինչև մի բաժակ թթի օղի չխմես, չենք շարժվելու:

— Մի բաժա՞կ: Բա քո բերած նամակը էդքան էժա՞ն է:

— Մինչև մի բաժակ այստեղ չխմեմ, չեմ բարձրանա: Գործս վերջացրի, էլ շտապելու տեղ չունեմ: Այսօր քո հյուրն եմ:

Հրաչյն շարունակում է շաղակրատել, մայրս խոհանոց մտավ օղի բերելու, մենք անհամբեր սպասում ենք: Եվ հանկարծ Հրաչյն այնպես ծղրտոց է գցում, որ գըլուխներս կորցրած պատշգամբ ենք դուրս գալիս:

— Ի՞նչ պատահեց,— տագնապահար հարցնում ենք:

Խե՜ղճ Հրաչո... կծան շանից էլ վատթար մեր աքլորը թռել է մեջքին և սուր կտուցը խրել նրա ծոծրակը: Հիմա Հրաչյն ու աքլորը պտտվում են: Հրաչյն ծըղըրտում է, ձեռքերը թափահարում, աքլորը մագիլներով ու կտուցով քրքրում է նրա բաճկոնը, մեջքը, գլուխը: Վերջապես Հրաչյին հաջողվում է աքլորին ցած գցել և կոշիկի սուր ծայրով այնպես է խփում աքլորի գլխին, որ սա փռվում է գետնին ու մորթվածի պես թպրտում: Հրաչյն երկրորդ հարվածն է հասցնում նորից գլխին:

— Դանակը շուտ ցած գցեք,— ներքեվից ձայնում է եղբայրս և, դանակը ստանալով, անմիջապես կտրում է աքլո.ի գեղեցիկ ու հպարտ գլուխը,— էս մեկն էլ մորս առաջին թոռան առաջին նամակի մաղարիչը:

— Թող մատաղ լինի նրան,— արտ ս-գանքում է մայրս:

Հրաչյին վերև ենք տանում, շորերը կարգի գցում, վիրավոր տեղերը օղի քըսում, ուշքի բերում:

— Քոռանա՛մ ես, Հրաչո՛ ջան,— մայրս պտտվում է նրա շուրջը ու մղկտում,— էս ի՞նչ փորձանքի մեջ ընկար:

— Ինձ տեղն էր, տիկի՛ն Սաթենիկ, էն ժամանակ նամակը չտվի, դիտավորյալ թաքցրի, որ վերջում բերեմ:

— Վերջն էլ էս եղավ:

— Ծատ լավ վերջ էր,— Հրաչյն նորից զվարթացավ,— դու ինձ համար աքլոր մորթող չէիր, էն էլ՝ կարմիր...

⁂

Գարնան ցանքի ժամանակն եկավ և նորից հավերին ու մենակ մնացած աքլորին քշեցինք իրենց ցանցապատ անկյունը: Առաջին օրերը շատ էին կչկչում, դուրս գալու ելք որոնում, բայց պատերն ամուր էին ու բարձր: Կամաց-կամաց հաշտվեցին վիճակի հետ ու հանգստացած շարունակեցին իրենց խաղաղ առօրյան: Հավերը մեծ մասամբ ինկուբատորից բերված նախկին ճտեր են, մասամբ ցեղ





են և թռչելու սեր այնքան էլ չունեն:

Սկզբում ինկուբատորից միայն հանրային տնտեսություններն էին օգտվում: Հետո արտադրությունը ընդլայնվեց, և Օձունից հատուկ մեքենաներով ճտեր էին բերում ու թաղեթաղ վաճառում: Տարիներ առաջ էր, գնացել էինք Օձուն՝ եղբորս ընկերոջ տուն: Այնտեղ առաջին անգամ տեսանք մեծ, թմփլիկ, ծանր քաշով հավեր:

— Երկուսը մի ոչխարի չափ են,— պարծեցավ եղբորս ընկերոջ մայրը,— հյուր է գալիս, անմիջապես մորթում ենք, երեսներս պարզ անում: Թե չէ հին հավերը կես կիլո քաշ էլ չունեին:

Իսկ վերադարձին նա մի հավ բռնեց և տվեց մեզ.

— Տարեք պահե՛ք: Ձվերը թխսի տակ կդնեք, կտեսնեք ինչ ճտեր դուրս կգան:

Բերեցինք: Սուսիկ-փուսիկ իր համար պտտվում էր: Կեր տայիր՝ կուտեր, չտայիր՝ ձայն չէր հանի: Իսկ մերոնք հենց սովում են, այնպես են վրա տալիս, կարծես աշխարհի վերջն է, բոլորը տարան, իրենց բան չմնաց: Երեկոյան մերոնք մի ցատկով գոմի տանիքն են բարձրանում, թառին նստում, սա խեղճ-խեղճ կուչ է գալիս: Ստիպված բռնում, ձեռքով դնում ենք թառին, բայց առավոտյան թրմփոցով ընկնում է:

— Էս «դաչնիկի՞ն» որտեղից գտաք,— մի օր ծաղրանքով հարցրեց մեր հարևանուհի Հայկանուշը, և դրանից հետո հավի անունը «դաչնիկ» կնքվեց ի պատիվ առաջներում մեր գյուղ եկող կերած-խմած, չաղլիկ, թմփլիկ հովեկների:

Տեսանք «դաչնիկը» շատ է տանջվում, գոմի սրահի մի անկյունում արկղ դրեցինք որպես թառ: Մեն-մենակ թառում էր այնտեղ, իսկ առավոտները քարշ գալիս մյուսների պոչից:

— Մեղք է,— ասաց մայրս,— երանի բերած չլինեինք: Ձու էլ չի ածում:

Չգիտենք կարոտի՞ց, թե՞ վշտից «դաչնիկը» օրեցօր հալումաշ եղավ և մի առավոտ սատկեց:

Հետո մենք «դաչնիկներին» վարժվեցինք, «դաչնիկները» մեր պայմաններին, և գյուղը լցվեց ինկուբատորից բերված ճտերով, որոնք սովորականից շուտ էին թևակալում, երկու-երեք ամսում դառնում քուչուչ անող հավեր ու աքլորներ: Բայց այս աքլորները նման չէին իրենց նախնիներին: Բնավորությամբ շատ էին ծանր, դանդաղաշարժ էին, անտարբեր, իրար հետ չէին կռվում, չէին վազվզում, նույ-

նիսկ կարգին ծուղրուղու չէին կանչում:
— Ո՞վ է տեսել երեկոյան, նոր մութնեմութին աքլորը կանչի,— ասում էին գյուղի մեծերը, որոնց համար աքլորականչը տարիներ շարունակ ժամացույց էր եղել՝ ճշգրիտ ու անխափան:
Իսկ սրանք ծուղրուղու էին կանչում երեկոյան ու գիշերվա բոլոր ժամերին, երբ քեֆները տար: Դրա համար մեր տատիկները շատ էին ուզում նախկին ցեղից աքլորի նմուշներ պահպանել:
Մեր տանը դրանցից մի հատ կար: Երկաթե ու քարե պատերի մեջ նա մենակ էր: Նրա աշխարհը ցանցապատ էր ու ցանցերի արանքից միայն այգու ծառերն էր տեսնում և լոբու, կարտոֆիլի, վարունգի ու պոմիդորի թփերը: Կեր էր ուտում, ջուր խմում նույն ամանից, նույն գետինը կտցահարում ամբողջ օրը, պտտվում հավերի շուրջը՝ հովանավորի, տեր ու տիրակալի պես: Նա նույն գեղեցիկ ու հպարտ տեսքն ուներ, ինչ իր նախնիները, քայլում էր նրանց պես կատարը ցցած, վեհ ու խրոխտ կեցվածքով: Օրվա ինչ-որ ժամի, մեկ էլ տեսար, հավերը պտտվում են նրա շուրջը, կտուցներով մաքրում նրա փայլուն փետուրները: Մտքիս մեջ ես նրան իմն էի անվանում, որովհետև թեև արտաքնապես նման էր Հենրիկի նկարած աքլորին, բայց իմ նկարածների պես տխուր էր:
Մի առավոտ մեր հարևանուհի Հայկուշը իր թևավորներին կերակրելու ժամանակ հավանոցի դուռը բաց էր թողել: Հավերը իրենց թափահարելով, ցրվել էին: Հայկուշը մինչև բոլորին կհավաքեր, փումփուլավոր վառեկներից մեկը թռել էր ցանկապատից ու կչկչալով մեր այգու բաց դռնակից ներս մտել: Նրա կչկչոցը տակնուվրա արեց մեր հավերի հանգիստը: Ցանցի արանքից նրանք նայում էին ազատության մեջ անհոգ թռվռող ջահել վառեկին և տագնապահար շարժումներով ետուառաջ քայլում: Ամենից բարձր ծղրտում էր իմ աքլորը: Չհասկացա, թե ինչպես թափահարեց թևերը և մի ցատկով, թռավ անցավ ցանցը, մոտեցավ փումփուլավորին: Եվ միասին փախան, կորան այգու խիտ թփերի մեջ, կարծես նախապես պայմանավորվել էին:
— Հայկո՛ւշ,— կանչեցի հարևանուհուս,— այս ի՞նչ արեցիր: Հիմա մարգերը շարքից կհանեն:
Հայկուշը ննասպատ եկավ: Սկսեցինք մեծ զգուշությամբ հետախուզել խիտ թփերը: Լոբուտից փախչում էին պոմիդորների մեջ, այնտեղից վարունգի թաղերն էին ոտնատակ տալիս, հետո մյուս բանջարեղեններ:
Երկու օր մեր աքլորն իր փումփուլավոր ընկերուհու հետ այգու կանաչների մեջ ազատություն էր վայելում: Մեր զայրույթը, մորս ու Հայկուշի անխնա անեծքները նրանց չէին հասնում: Ծուտշուտ փոխում էին թաքստոցները և վայրկենապես անհետանում: Երկու օրվա մեջ ոչ մի պոմիդոր չէին կտցահարել և ընդհանրապես ոչ մի վնաս չէին հասցրել: Կարծես ուզում էին ասել՝ հանգիստ թողեք մեզ, մարդիկ, մենք թևավորներ ենք, ազատություն տենչող թևավորներ: Հոգնել ենք ցանցերից ու քարե պատերից, թողեք վայելենք այս փարթամ կանաչների գեղեցկությունը:
Պատահում էր՝ մոտենում էին ցանցին, նայում հավերին, մի քիչ պտտվում, կարծես նրանց համար էլ էին փրկության ելք որոնում: Այդ ժամանակ զգուշությամբ մոտենում էինք, կեր շաղ տալիս, որպեսզի հրապուրենք: Բայց իսկույն փախչում էին: Չէ, չկարողացանք կաշառել:
Երրորդ օրվա երեկոյան նռենու տակ Հայկուշը փումփուլավորին բռնեց: Իսկ աքլորը նորից փախավ, շարունակեց ազատություն վայելել ևս մի քանի օր:
Մի օր էլ, երբ աշխատանքից վերադարձա, եղբորս աղջիկն ուրախ-ուրախ հայտնեց:
— Աքլորին բռնեցի:
— Հետո՞:
— Գնա տես, ինչպես եմ պատժել:
Այո, նա պատժել էր... դաժանաբար: Նայում ու չէի հավատում, թե դա իմ գեղեցիկ ու հպարտ աքլորն է: Թևերն ու պոչը խուզել էր, պոչի վրա մի փետուր թողել ցցված:
— Լավ չես արել,— ասացի դառնացած:
— Բա իր արածը լա՞վ էր, մարգերը շարքից հանեց,— համարյա լացակումած պատասխանեց,— խեղճ տատիկը էնքան տանջվեց սրա երեսից:
Աքլորը, ստորացած ու նվաստացած, կանգնել էր քարե ցանկապատի մոտ: Առաջվա նման հավերը պտտվում էին նրա շուրջը, հիմա ավելի գորովանքով, կարծես կորցրել էին ու գտել: Սակայն նա խույս էր տալիս, հրաժարվում գուրգուրանքից, թեև այդ վիճակում շատ էր կարոտ մխիթարանքի: Կարծես հասկանում էր, որ ժամանակները փոխվել են, աքլորներն առաջվանը չեն, ինքը վերջինն է, ցեղի վերջին աքլորը:

ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

# ԵՐԿՈՒ ՔՈՒՅՐԻԿ

Երկու քույրիկ
Երկու ոլիկ,
Բայց ունեին
Մի հատ տիկնիկ:
Մեծն ասում էր.
— Ի՛մն է, ի՛մն է,
Փոքրն ասում էր.
— Ի՛մն է, ի՛մն է...

Որ չկռվեն
Երկու քույրիկ,
Հայրիկն առավ
Երկու տիկնիկ:
Հետո առավ
Երկու արջուկ,
Երկու գնդակ,
Երկու գայլուկ,
Երկու քուչիկ,
Երկու կկու,
Ամեն ինչից
Երկու-երկու...

Երկու քույրիկ,
Երկու ոլիկ,
Բայց ունեին
Մի հատ մայրիկ:
Մեծն ասում էր՝
— Ի՛մն է, ի՛մն է:—
Փոքրն ասում էր.
— Ի՛մն է, ի՛մն է:—
Հայրիկն ասաց.
— Լռե՛ք հապա,
Ի՞նչ եք իզուր
Աղմուկ հանում:
Ամեն ինչի
Երկուսը կա,
Բայց մայրիկը
Մեկն է լինում...

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

# Անտառային դպրոց-առողջարան

1.

Թումանյանի շրջանի Օձուն գյուղի հարավարևմտյան կողմի անտառափեշին մի հանդամաս կա, որ տեղացիները անվանում են Կենդանարար: Պատմում են, որ այդ վայրերով անցնող մի բանակի մեջ վարակիչ հիվանդություն էր տարածվել և բանակը աղբյուրներով ու ծաղիկներով հարուստ այս վայրերում լքել է հիվանդներին, համոզված, որ նրանք դատապարտված են շուտափույթ մահվան: Սակայն հիվանդները կարճ ժամանակում՝ ջրի, օդի և բուժիչ խոտերի ազդեցությամբ առողջանում են, այդ պատճառով հանդամասը կոչվում է Կենդանարար, այսինքն՝ բժշկող, առողջացնող, կենդանացնող:

Հայաստանի ամենալայվ անկյուններից մեկն է այս հանդամասը, որի հարևանությամբ է գտնվում Օձունի անտառային դպրոց-առողջարանը: Այս հանդամասում կարելի է գտնել լոշտակ, հազարաթերթիկ, եզան լեզու, ուրց, դաղձ, փիփերթ, դանդուռ, ալոճ, թանթրվենի, երիցուկ, արջընկույզ և այլն: Մոտակա անտառում կան բազմաթիվ ծառատեսակներ՝ բարդի, բոխի, կաղնի, հաճարի, վայրի հատապտուղներ՝ տանձ, խնձոր, մոշ, մոռ, մորի և հաղարջ: Այնպես որ անտառում կատարած ամեն մի զբոսանք դառնում է անջնջելի հիշողություն: Առողջարանում գործում են բազմաթիվ խմբակներ, երեխաներից ամեն մեկն ընդգրկված է իր նախասիրած խմբակում: Իսկ թատերական խմբակի բեմադրած «Գիքորը» դիտել են շրջանի շատ դպրոցականներ:

2.

Մի առավոտ հինգերորդցի Սամվել Ծահվերդյանը դպրոց-առողջարան եկավ ձեռքին... օձ, իրենց գյուղում՝ Դանուշավանում էր բռնել: Օձին հաջորդեց կրիան՝ իր ձագերով, հետո՝ ոզնին, հետո՝ չղջիկը, հետո մողեսներ, խեցգետիններ, երկկենցաղներ և այլն: Մի խոսքով կենդանաբանության դասին ինչ որ անցնում էին, Սամվելը բերում էր: Հատկապես դժվար էր չղջիկի որսը: Սամվելին հաջողվեց չղջիկ որսալ գիշերով, իրենց գյուղի մոտակա քարանձավում: Այսպես, պատանի բնասերների խմբակը ունեցավ իր կենդանի անկյունը, իսկ խմբակի ղեկավար ընտրեցին հենց իրեն՝ Սամվելին:

Պատանի բնասերների խմբակն այժմ ղեկավարում է Սամվելի քույրը՝ Նունուֆարը: Ի տարբերություն Սամվելի, քույրը ավելի բույսեր է սիրում: Նրա պատրաստած հերբարիումները ուղարկվել են Ուկրաինա և Էստոնիա՝ իրենց գիշերօթիկի հետ բարեկամացած դպրոցներին:

Խմբակի անդամներին հանձնարարված է տեղի վայրի ծաղիկներից ու բույսերից աճեցնել սենյակային պայմաններում: Այս փորձերը կատարվում են բնասերներին հատկացված ջերմոցում:

Ջերմոցում տարբեր ծաղիկների, կակտուսների, լոշտակի և բազմաթիվ այլ բույսերի կողքին, մի անկյունից, բարձրանում, տարածվում է բնասերների ամենասիրելի մոմաբաղեղը: Մոմաբաղեղն իրար վրա գմբեթաձև շարված աստղածաղիկների բույլեր է ներկայացնում: Ամեն մի բույլի ամեն մի աստղածաղիկ կազմված է իրար վրա գտնվող վեց աստղիկներից և բոլոր աստղիկները տարբեր չափսերի ու տարբեր գույների են: Աստղածաղիկների վրա ցող կա: Մոմաբաղեղը այդպես արտասվում է: Ի տարբերություն մարդկային արցունքների, մոմաբաղեղի արցունքները մեղրի նման քաղցր են ու համեղ:

Առողջարան-դպրոցի լայնարձակ բակում պատանի բնասերները տնկել են մասրենու թփեր և թփերի վրա վարդի տեսակներ են պատվաստում: Իսկ օժանդակ հողամասում մշակում են ճակնդեղ, կանաչիներ, սոխ, մի խոսքով՝ այն ամենը, ինչ պետք է սնվելու համար:

Խմբակի հսկողությանն է հանձնված նաև մի անտառահատված, որ պահպանեն հրդեհից, անտառահատումից և որսագողերից:

**ՄԽԻԹԱՐ ՌՍԿԱՆՅԱՆ**

# ՏԵՍ, ՈՐ ՀԱՆԱՔԸ՝ ԴԱՆԱԿ ՉԴԱՌՆԱ

**Ամեն մեկն էլ կամա թե ակամա կարող է թույլ տալ այնպիսի արարք, որի համար ստիպված է լինում ամաչել: Նման արարքը շատ անգամ հայտնի է լինում միայն արարքի հեղինակին, որն իր արածը շարունակ հիշում ու տանջվում է: Փշի պես խրված է մնում այդ հիշողությունը նրա հոգու մեջ: Այդ փշից ազատվելու միջոցը այն է, որ մտածես արածիդ վրա, վերլուծես, հասկանաս սխալդ և դաս առնես դրանից: Մեր այս զրույցների շարքը իրենից ներկայացնում է նման արարքների խոստովանության փորձ: Արարքներ, որոնք երբեմն անմեղ կատակների բնույթ են կրում, բայց ունենում են ծանր հետևանքներ, այդպիսի դեպքերի մասին է, որ ժողովուրդն ասում է՝ հանաքը դարձավ դանակ: Այս խոստովանությունների հեղինակները դպրոցականներ են, սովորում են Ալավերդու շրջանի Օձուն գյուղի անտառային դպրոց-առողջարանում և շրջանի տարբեր դպրոցներում: Նպատակահարմար գտանք անունները չհրապարակել:**

Մի անգամ տանից դպրոց բերեցի մայրիկիս ոսկե ժամացույցը: Ընկերուհիս մոտեցավ և ասաց. «Տուր կապեմ, գնամ երաժշտական դպրոց, գամ՝ նորից քեզ կվերադարձնեմ»: Չկարողացա մերժել, տվեցի: Ընկերուհիս գնաց երաժշտական դպրոց, եկավ և ասաց, թե ժամացույցը կորցրել է: Ես շաբաթ օրերը գիշերօթիկից գնում էի տուն և վախենում էի մայրիկիս այդ մասին ասել: Ոչ մեկին չէի կարողանում պատմել ու տանջվում էի... Ամեն անգամ դասերի ժամին ուսուցիչները ինձ վրա բարկանում էին, որովհետև շատ անուշադիր էի դարձել: Մայրիկս, երբ իմացավ, բարկացավ և ծեծեց: Իհարկե, ում մայրն էլ լիներ՝ կծեծեր: Եվ այդ ժամացույցի պատճառով իմ կյանքում ասես շատ բան փոխվեց, սկսեցի վատ սովորել, ցածր գնահատականներ ստանալ:

Այսուհետև որոշել եմ տանից, առանց մորս թույլտվության, ոչինչ չբերել դպրոց:



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



● Ճամբարի առաջին օրերն էին: Իրիկունը, չգիտես ինչու, որոշեցինք չքնել: Սենյակի աղջիկներից մի քանիսը քնեցին, իսկ մյուսներս սկսեցինք զրուցել: Սենյակում երկու քույրեր կային, նրանք էլ էին քնած: Որոշեցինք նրանց դեմքերին

ատամի մածուկ քսել: Սկզբից փոքր քրոջ երեսին քսեցինք: Նա արթնացավ շատ հանգիստ, մաքրեց, մեզ հետ ծիծաղեց ու կրկին քնեց: Հետո մեծ քրոջ երեսին էլ քսեցինք: Նա արթնացավ, շատ բարձր գոռաց և դուրս թռավ սենյակից: Քիչ անց լսվեց ճամբարի պետի և ավագ ջոկատավարի ձայնը: Ներս մտավ ավագ ջոկատավարը և մեզ, ով որ արթուն էր, դուրս հանեց սենյակից: Պիոներսենյակում մեզ շատ նախատեցին: Մեզ թվում էր մեր կատարածը ուրախ կատակ է, բայց պարզվեց, որ անշնորհք արարք էինք թույլ տվել:





Առաջին ամսին ճամբարում ամեն ինչ լավ էր՝ խաղում էինք, ուրախանում: Մի օր էլ չիմացանք, թե ինչ փչեց մեր խելքին, վեր կացանք, հագնվեցինք ու իջանք բակ: Անձրև էր գալիս: Մեզնից մի քանիսը մտան ճամբարի ավտոբուսի մեջ: Նրանց ջարանից գաղտնի դուրս գալը դարձավ սովորություն: Մի օր էլ իմ նոր ընկերները գաղտագողի դարպասից դուրս էին եկել և գնացել ճտանոց: Այնտեղից երկու մեծ ճուտ վերցրել, բերել, դրել էին ավտոբուսի գործիքների արկղի մեջ: Հաջորդ օրը ես էլ միացա նրանց, արկղն ավտոբուսից հանեցինք, տարանք դրեցինք խոտերի մեջ: Հետո որոշեցինք ճտերին ուրիշ տեղ տանել: Հենց այդ ժամանակ երեք տղա մեզ բռնեցին և հարցրին, թե որտեղից ենք վերցրել: Ընկերներս կարկամեցին, վախեցան ասել, նրանց բռնեցին, տարան ճտանոց: Նրանք ճտերին դրեցին տեղը և վերադարձան:

Բայց վատն այն էր, որ ավտոբուսի միջի արկղը, որը ճտերի հետ խոտերի մեջ էինք դրել, կորավ: Դրա համար մեզ պատժեցին: Մենք զղջացինք: Ես մտածում եմ, որ լավ կլինի այդպիսի բաներից հեռու մնալ:

Դա եղավ անցյալ տարի, օգոստոսի 10-ին: Առավոտյան մայրիկս գնաց աշխատանքի: Ես արթնացա և սկսեցի մաքրել սենյակները: Ամեն ինչ վերջացնելուց հետո իջա բակ՝ խաղալու: Աղջիկները պարան էին խաղում: Ես էլ էի ուզում խաղալ, բայց ինձ չթողեցին: Ես զայրացա, վերցրեցի քարը, նետեցի նրանց վրա, կպավ Ռուզաննային: Իմ պատճառով նրան տարան հիվանդանոց:

Այս արարքիս համար իմ ամբողջ կյանքում ամաչելու եմ:



Մի անգամ ես ծեծել էի մի տղայի, որի համար հետո շատ փոշմանեցի: Երբ փոխադրվեցի 4-րդ դասարան, այդ տղան մեր դասարանցի եղավ և նա ու ես մտերիմ ընկերներ դարձանք: Մի անգամ էլ, երբ երեխաներով գնացել էինք լողանալու, ես մի տղայի հրեցի և նա ջուրն ընկավ, բայց պարզվեց, որ լողալ չգիտեր, և ես էլ ջուրն ընկնելով հանեցի նրան: Եվ հրելուս համար շատ զղջացի և ներողություն խնդրեցի:

ԼՅՈՒԴՄԻԼԱ ՖԱԴԵԵՎԱ

## ՎԱՐՔԸ

Նստեցի անշարժ,
Արձանի տեսքով
Եվ «հինգ» ստացա
Ես վարքից այսօր:
Հանգիստ չնստեց
Վովկան շատախոս
Ու գնահատվեց
Նրա վարքը «չորս»:
Հրավիրվեցին
Կռվողները դուրս,
Իսկ իմ պատճառով,
Որ նստել եմ սուս,
Կարգապահ Ժենյան
Ստացավ «երկուս»:
Նա իր ծիծաղը
Չէր կարող զսպել.
— Նայե՛ք,— ասում էր,—
Ինչպե՛ս է նստել:

## ԾԻՏԻԿՆԵՐԸ

Դպրոցի ճամփին,
Խոտերի վրա,
Երկու չար ծիտիկ
Ծեծում են իրար:
Կռվում են անհաշտ,
Աղմկում այնպես,
Ինչպես որ հաճախ
Ստասիկն ու ես:
Ստասը նայում
Եվ ասում է ինձ.
— Դա սովորել են
Ծտերը մեզնից:

Թարգմ. ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

ՀԱՍՄԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ




Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

Մորաքրոջս աղջիկը՝ Լիլիթը, եկել էր մեզ մոտ հանգստանալու: Նա ինձնից մեծ է, տասներորդ դասարան է փոխադրվել, բայց բնավորությամբ ուրախ ու չարաճճի է, իմ ու իր չորս տարվա տարբերությունը չի էլ զգացվում:

Արշակը, մի հաստափոր գիրք թևի տակ, ․րպաններում թերթեր ու ամսագրեր, ե-

կավ, գոռոզ-գոռոզ անցնում էր մեր դըռնով, գլուխը չբարձրացրեց, չնայեց մեր կողմը:

— Այդ ո՞վ է, ձեր փոստատա՞րն է, թե՞ շրջիկ գրադարանավարը,— հարցրեց Լիլիթը:

— Արշակն է,— ասացի:

— Ո՞վ է Արշակը,— հարցրեց:

— Մեր հարևանի տղան է,— ասացի:

— Նա՞, որ ամբողջ օրը թավալ է տալիս այգու թախտին:

Ես ծիծաղեցի, իրոք այդպես էր, Արշակը տանը ոչնչով չէր օգնում: Իր գործն համարում էր միայն գիրք կարդալը: Սովորում էր Երևանի տեխնիկումներից չգիտեմ որի երրորդ կուրսում: Ասում էր, որ իր պես սովորող չկա, որ իր չափ ոչ մեկը կարդացած չի, որ բոլոր դասախոսները իրեն են գովում միաբերան, որ իր կարդացածությամբ գերազանցում է նույնիսկ նրանց:

Շուտով մեր այգում սկսեցին հավաքվել Լիլիթի հասակակիցները: Մի օր էլ հետաքրքրությունը Արշակին բերեց այստեղ: Խոսք բացվեց Երևանի մասին, Արշակն ասաց, որ ինքը Երևանը հինգ մատի պես գիտի և աչքերը փակ կգտնի ուզածդ փողոցը, շենքը, տունը կամ հիմնարկությունը: Լիլիթը ծաղրելով ասաց.

— Բայց մեր փողոցը հազիվ թե գիտենաս:

— Որտե՞ղ եք ապրում:

— Բերա, Ծաղկի փողոց, թիվ 2:

Ես զարմանքով նայեցի Լիլիթին: Սակայն Լիլիթը ծիծաղը զսպելու, թե ինձ լըռեցնելու համար, բարձրաձայն հազաց: Արշակը ծոցատետրն ու մատիտը հանեց, գրեց «Լիլիթի հասցեն» և հանդիսավորությամբ նորից դրեց գրպանը.

— Գիտեմ, շատ լավ էլ գիտեմ... Կվերադառնաս ու կհանդիպենք քաղաքում,— և գոռոզ-գոռոզ գնաց, ինքն իրեն երևի միտք անելով, որ Լիլիթն իր հասցեն իսկույն ասաց, հենց քաղաքում իրեն հանդիպելու մտադրությամբ:

Լիլիթի ընկերուհիների ուսերն արդեն ցնցվում էին անձայն ծիծաղից:

— Վա՜յ, Լիլի՜թ, սպանեցիր, վա՜յ...

Ես զգում էի, որ Լիլիթը չարաճճիություն է արել, բայց չէի հասկանում, թե ինչ, և թե աղջիկներն ինչու՞ են ծիծաղում: Այդ հասկացա հետո, երբ կարդացի Հակոբ Պարոնյանի «Մեծապատիվ մուրացկանները»:

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

# ԼՈՒՍԱՍՏՂԸ

Առավոտյան աստղը, մայրի՛կ,
Ծաղկի նման թեքվել է ցած.
Ի՞նչ անուշ է լույսը հոսում
Երկնքի մեջ մշուշամած:

Մթնում բացված մի վարդ է նա,
Բույր է բխում շուրջանակի,
Ի՞նչ անուշ է երկինք նայել
Ու վայելել բույրը ծաղկի:

Արնգալի նշանն է նա
Մշուշի մեջ ելևէջում,
Ի՞նչ անուշ են այդ նշանին
Փառաբանում սիրտ ու թռչուն:

Առավոտյան աստղը, մայրի՛կ,
Ծաղկի նման թեքվել է ցած.
Ի՞նչ անուշ է կյանքը հոսում
Սրտերի մեջ մեր խաղաղված...

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 4. ՔԱՐԱՅՐՆԵՐԻՑ ԲԽՈՂ ԼՈՒՅՍԸ

Լոռվա ձորերում մեր որոնումների հիմնական նպատակներից մեկն էլ Քոբայրի վանքի շրջակայքի հետազոտումն էր: Այնտեղ ժամանակին նշանավոր եկեղեցական կենտրոն է եղել, գործել է հոգևոր բարձրագույն դպրոցը: Այնպես որ, ո՞վ գիտե, թե ինչեր կարող են թաքնված լինել այնտեղ, ժայռերի մեջ: Նրա անունն արդեն ինչ-որ բան հուշում է, «քոբ» վրացերեն անձավ է նշանակում, իսկ «այրը» հայերեն անձավ բառն է: Կարելի է ուրիշ ձևով էլ բացատրել՝ ժամանակին եղել է Կոփայր (կոփած, փորած այր), որը հետո Քոբայր է դարձել:

Եվ ահա, 1978 թվի ուշ աշնանը մենք խմբով հայտնվեցինք Քոբայրի վանքի մոտ: Վանքի շուրջը, ամենուր նախշազարդ քարեր էին. գետնին թափված, հողի մեջ խրված, խաշամով ծածկված:

Մեր կողքին Քոբայրի նշանավոր ձորն էր. մի վիթխարի կիսաշրջան՝ երկինք հասնող ուղղահայաց պատերով: Ներքևում մի կտոր դեղնած անտառ էր ձորի մեջ՝ կապույտ մշուշ, իսկ վերևում մի կտոր ցուրտ երկինք: Կանգնած հիանում էինք, մեկ էլ կողքիս կանգնած Մասիսը մատը մեկնեց դեպի երկինք.

— Պա՛հ, այն պատի՛ն նայիր:

Իսկապես որ «պահ». քարափի ուղիղ մեջտեղում երևում էր մարդու ձեռքով սարքած դռան քարե շրջանակ: Ինչպե՞ս էին մարդիկ բարձրացել այնտեղ, ուր մեր պապերի ասած՝ միայն թևավոր դուշը կհասներ: Կամ թե ինչու՞ էին բարձրացել: Ես հեռադիտակը մոտեցրի աչքերիս ու նայեցի: Հարթ ժայռեր էին, թվում էր բարձրանալու հնար չկա: Հանկարծ ձեռքըս երերաց ու հեռադիտակի դիրքը փոխվեց: Անսպասելիորեն հեռադիտակի մեջ երևաց մի գեղեցիկ շենք՝ սրբատաշ պատերով ու կամարաձև պատուհաններով: Աչքերիս չհավատացի: Աչքերս փակեցիբացեցի, շենքը կար:

Նայեցի, նայեցի, հետո կանչեցի Մասիսին ու հեռադիտակը մեկնեցի նրան:

Հետո կանչեցինք տղաներին և հեռադիտակը սկսեց ձեռքից ձեռք անցնել: Մի կուշտ նայելուց հետո, որոշեցինք բարձրանալ այդ շենքի մոտ:

Մասսին ուղարկեցինք ձորի դիմացի քարափները, որ այնտեղ նստի ու իր հըզոր ձայնով բարձրացողներին ուղղություն տա: Ես ու Արտոն էլ ամենաերկար պարանը վերցնելով, գնացինք հետազոտության: Մյուսները մնացին վանքի մոտ՝ պետք է վրանները խփեին ու ճաշ եփեին:

Ես պարանի մի ծայրը մեջքիս կապած՝ սկսեցի կամաց սողալ անդունդի պռնկով ու կանչել.

— Մասի՜ս, չհասա՞:

Էլի էի բարձրանում ու կանչում.

— Մասի՜ս, շատ մնա՞ց:

— Գնա՛, գնա՛... որ հասնես՝ կասեմ,— ասաց նա, բայց ես զգում եմ, որ գնում եմ անդունդի պռնկով ոլորվող հնադարյան կածանի տեղով: Մեկ էլ Մասիսը կանչեց.

— Հերի՜ք է, հերի՜ք է, հասա՛ր:

Ես մոտեցա ժայռին: Կածանը վերջացավ ուղիղ անդունդի եզրին: Ներքև նայեցի ու մտածեցի, որ գլխից ձեռք քաշած մարդը այս կածանով առանց պարան էլ կանցնի, բայց վայն եկավ, որ ոտքը սոթ տա կամ աչքը մի մլակ, ճանճ ընկնի ու նա շփոթված մի շարժում անի. ներքևում անհատակ անդունդն էր: Այնտեղից գալիս էր ջրվեժի խուլ ձայնը: Անդունդի մյուս կողմում՝ դիմացի ժայռի մեջ, երևում էին երկու սև անցքեր: Հարթ, մոմի նման ողորկ այդ ժայռի մեջ մարդի՞կ էին անձավները փորել:

Անցա ու անդունդի վրայով պարանը ձգեցի: Ճանապարհը պատրաստ էր: Անդունդի մյուս երեսին պատ էր շարած ու դռան տեղ թողած:

Անցա պատի մյուս կողմը: Այնտեղ այն նույն շենքն էր, որի անակնկալ հայտնվելը մեզ զարմանք էր պատճառել: Երևի մատուռ էր, սարքված բազալտե մեծ սալաքարերից ու մի կողքով հենված ժայռերին: Գլուխս թեքելով մտա ներս: Մի անկյունում կոտրած սափոր էր, մյուսում՝ քարե ավազան, որի մեջ հավաքվում էին ժայռից ծորացող ջրերը: Ծարավ էի, կռացա մի կուշտ խմեցի ու դուրս եկա:

Մատուռի առջև տարածվում էր մի մեծ հարթակ՝ բոլոր կողմերից անտեսանելի: Մի ժամանակ այն քողարկված է եղել նաև վերևից թափվող ջրվեժի շիթերով: Չափեցի՝ հարթակի երկարությունը ութսուն մետր էր: Երևում էին հզոր պատերով շենքերի մնացորդներ, փորած քարանձավներ: Երևի ժամանակին այստեղ է եղել Քոբայրի վանքի ապաստարանը, որտեղ թաքնվել են մարդիկ և թաքցրել վանքի ձեռագրերն ու գանձերը:

Մինչ ես թափառում էի արևի երես չտեսած այդ բնական պատշգամբում, տղաները անդունդի վրա մեկնած պարանից օգտվելով մտան ամրություն: Թվում էր, թե մենք հեռու-հեռու մի անհայտ-աշխարհ ենք ընկել ու այնտեղից նայում ենք անհատակ անդունդի խորքում երևացող մյուս աշխարհին: Այնտեղ՝ ցածում երևում էր փլված մեծ եկեղեցին:

— Տղե՛րք, ինց որ եկեղեցու պատը դիտմամբ քանդած լինեն, որ սրբերը մեզ նայեն,— ասաց Արտոն: Իսկապես, թվում էր, թե նրա պատին նկարված սրբերի զարմացած հայացքները մեզ էին ուղղված: Քանի՞ դար է, որ նրանք կենդանի շունչ չէին տեսել այս հարթակի վրա (հետագայում իմացանք, որ մի հիսուն տարի առաջ հարթակի վերևից մի հսկա քար է պոկվել ու եկեղեցուն հարվածելով փշրել նրա մի պատը, որբերի որմնանկարները արևի երես հանելով):

— Դիմացի քարանձավի ներսում դուռ էր երևում, տեսա՞ք,— ասաց Մասիսը, երբ իջնում էինք:

— Որտե՞ղ,— զարմացանք մենք:

— Մեր դիմացի քարանձավներից մեկում:

— Ի՞նչ ես խոսում— տաքացա, ես — այդ ո՞նց եղավ, որ ես հեռադիտակով չըտեսա, դու առանց հեռադիտակի տեսար:

Գնացինք: Իսկապես, նույնիսկ առանց հեռադիտակի աջ կողմի անցքի խորքում երևում էր մի սրբատաշ, քառակուսի անցք: Իմ նայելու ժամանակ քարանձավի ներսը խավար է եղել, իսկ հետո արևի շողքը ընկել է մեջն ու դուռը լուսավորել: Ուրեմն այս քարանձավը հաստատ արհեստական է ու գնում է դեպի ժայռի խորքը: Այս դեպքում մյուս անցքն ի՞նչ էր: Հեռադիտակով նայելիս. դրա մի եզրը ավելի խավար էր թվում: Դա հուշում էր, որ քարանձավը շարունակվում է դեպի խորհրդավոր դուռը: Բայց արդեն հեռադիտակին էլ չէինք վստահում ու դժվար էր ինչ-որ բան ասել: Մենակ մի բան էր հաստատ. մեր դիմաց արտակարգ անմատչելի թվացող, բայց մարդու փորած անձավ էր ու մենք, ինչ գնով էլ լիներ, պետք է մտնեինք դրա մեջ: Մինչ այդ գնացինք ճաշելու: Ես խարույկի համար փայտ բերելու գնացի, մտա անդունդի հատակի շեկ անտառը: Դրա խորքերից կացնի խուլ ձայն էր գալիս: Քիչ անց հանդիպեցի մի սմքած ծերունու: Բարևեցի ու հետը զրույցի բռնվեցի:



— Մեր վերևում ի՞նչ ծակեր են,— հարցրի նրան:

— Ասում են, հին ժամանակ ճգնավոր է ապրել էնտեղ,— ասաց նա՝ մատը ուղղելով երկի՛նք,— մեր գյուղացիները այդ քարանձավներին ճգնարան են ասում:

Ես շտապեցի տղաների մոտ, հացի նստելուց հետո բարձրացա, մագլցեցի մի քարանձավ, հետո՝ երկրորդը, երրորդը... Այս ի՜նչ շատ քարանձավներ կային: Կասկած չկա հենց սա է այն Քոբայրի գյուղը, որի գոյության մասին 1281 թվին ընդօրինակված մի ձեռագրում մեծահամբավ գիտնական Դավիթ Քոբայրեցու մասին գրված է. «Գրվեցավ ի հանգիստ նորա ի գերահռչակ սուրբ ուխտն Հաղբատ և մականուն Քոբերցի կոչեն ծնողների այնտեղացի լինելու և իր՝ այնտեղ ծնված լինելու պատճառով»:

Քարանձավներում գիրք չգտա, բայց շատ գոհ իջա ու Արտավազդի հետ պարանը վերցնելով բարձրացանք ժայռը: Մասիսն էլ որպես փորձված դիտորդ դիմացից, անդունդի վրայով գոռգոռալով, սկսեց ճշտել մեր վերելքի ուղին:

Գնում էինք ճգնարան: Մասիսի հրահանգով մենք նրա ասած տեղը կանգ առանք: Անդունդի եզրին քարե նստարան էր փորված: Ով գիտի, քանի հարյուր տարի առաջ ճգնավորը սրա վրա նստել ու հիացել է անդունդի խորքում շողացող ջրվեժով ու ժայռերին ձուլված մատուռով: Ո՞ւմ մտքով կանցներ, որ այդպիսի ամեհի ժայռերի մեջ մարդ հոժար կամքով կգնար կապրեր: Ո՞նց է ապրել ճգնավորը այդ ցրտի մեջ: Բա նրա ննջարանը՝ խարխափելիս հանդիպած դատարկությունը ննջարան էր, ուր նա մտել է սողալով ու գլուխը դրել չոր քարին: Բա նրա հարըստությունը՝ ունեցած-չունեցածը մի կոտրած կավե սափոր:

Բայց մեզ ամենաշատը զարմացրին մուտքի սրբատաշ քարերը. այդպիսի քարեր քարանձավի մոտ չկային: Պետք է որ պարաններով բարձրացրած լինեն անդունդի հատակից, ոտքերը հենելով մուտքի առջևի սյանը ու պլոկված ձեռքերով պարանը ձգելով: Եվ այդ ինչ զարմանալի մարդ է եղել, որ հինգ-վեց տարի կռվել է ապառաժների հետ ու իր կամքով իր համար բանտ է փորել:

Քրիստոնեական ժամանակների ճգնավորությունը տարածվել է մեր թվարկության երրորդ դարից սկսած քրիստոնեական Արևելքի երկրներում (Պաղեստին, Բյուզանդիա, Հայաստան): Ճգնավորները քաշվելով քարանձավները, իրենց իսկ խոստովանությամբ, աշխատում էին «ըս-

պահել իրենց անձը»: Ոմանք քարայր էին մտնում այսպես կոչված՝ սեփական հոգու փրկության եսասիրական ձգտումով: Բայց կային նաև անհատներ, սովորական մահկանացուներին անհասանելի, վեհ նպատակներ հետապնդող: Մեզ մոտ դրանցից առաջինը Գրիգոր Լուսավորիչն է համարվում: Ահա թե ինչ է գրում Մովսես Խորենացին այս մասին. «Երբ նա, ամբողջ Հայաստանը լուսավորեց աստվածագիտության լույսով, կուսապաշտության խավարը փարատեց և բոլոր կողմերը լցրեց եպիսկոպոսներով ու կրոնի ուսուցիչներով, այնուհետև նա սիրեց լեռները ու ամայությունը, որպեսզի խաղաղ մտքով ինքն իր մեջ ամփոփվի և աստծո հետ խոսի զբաղմունքներից ազատ»:

Հայաստանի մյուս նշանավոր քարանձավարճանը Մաշտոցի աշակերտ և Վարդան Մամիկոնյանի դասընկեր Եղիշեն է կարծվում, որն Ավարայրի ճակատամարտից հետո, ըստ ավանդության, առանձնացել էր Մոկաց երկրի մի քարայրում և զբաղված էր Վարդանի ու Վարդանանց պատերազմի մասին անմահ ստեղծագործությունը գրելով՝ «մի նշխարով, մի կում ջրով, սուրբ տքնանքով գիշերն անքուն», ինչպես ասում է Իսահակյանը: Ծնունդով նրա տեղը հովիվների միջոցով հայտնի է դառնում և սկսվում է մարդկանց անվերջանալի հոսք դեպի սրբի համբավի արժանացած ճգնավորի քարանձավը:

Սակայն, ասում է այնուհետև ավանդությունը, նա նեղվում է այդ այցելություններից և հեռանում է Ռշտունյաց երկիրն ու թաքնվում Արտոս լեռան Ոստանաձորի կիրճի քարայրում: Եվ իբրև թե մի քանի տարի անց, հովիվները նրան գտնում են այրի մեջ մահացած և թաղում են այրի մոտակա Չաղար Աստվածածին վանքում: «Այստեղ,— գրում է Գ. Սրվանձտյանը,— կհանգչի անտապան, անարձան, անհիշատակագիր նա, որ անմահացրեց Վարդանին ու իր դարը»:

Մեկ այլ ճգնավորի քարանձավ էլ կա, դարձյալ Վանա լճի ափին է, Նարեկա վանքից հյուսիս: Այստեղ երկնահաս ժայռի մեջ բազմաթիվ բնական փոքր այրեր կան: Նրանց մոտով մագլցում ես և հայտնվում սրբատաշ քարանձավում, որը միացած է ուրիշ չորս սենյակների հետ: Աստիճաններով բարձրանում ես վերնահարկի չորս սենյակները, ուր և, ասում են, Նարեկացու ճգնարանն է եղել: Անձավների բացվածքներից նայելիս, Վանա ծովը փռվում է աչքերիդ դեմ:

Մի ուրիշ քարանձավ էլ կա Գողթան գավառի Մեսրոպավան (այժմ Մարվանիս) գյուղի մոտ, Կոնախաչ սարի տակ: Ըստ ավանդության այստեղ էր Մաշտոցը հայոց այբուբենը ստեղծելուց առաջ տքնում իր աշակերտների հետ. «Ամեն բանով իրեն տալիս էր ամեն հոգևոր վարժությունների— միանձնության, լեռնակեցության, քաղցի ու ծարավի, և բանջարաճաշակության, անլույս արգելարանների, խարազնազգեստի ու գետնատարած անկողինների»,— գրում է Մաշտոցի աշակերտ Կորյունը:

Բալու քաղաքի բերդի մոտակա ժայռերի մեջ, ուրարտական արձանագրությամբ Գրեմսան քարի մոտ երկու փոքրիկ քարանձավներ կան, որոնց մեջ քարե կոպիտ շարվածքով բեմեր կտեսնեք և մրոտված փորագիր խաչեր: Սա է, ըստ ավանդության, Մաշտոցի ճգնարանը, որտեղ նա տքնում էր հայոց այբուբենը ստեղծելիս:

Քիչ հեռու երկու ուրիշ այրեր ևս կան՝ մեծ և փոքր: Մեծը, ասում են, Մաշտոցի դպրոցն էր: Նրա աջ անկյունում ծակեր են փորված, որոնց մեջ մարդու ձեռքը կմտնի: Իբր թե, երբ նա հայացքն անձավի պատին հառած խոկում էր, անցքի միջից հայտնվում էր մի հզոր աջ և քարի վրա գրում հայոց այբուբենը՝ Ա, Բ, Գ...

Այսպես, ահա, ըստ մեզ հասած ավանդության, խավարի ու ցրտի մեջ իրենց անձը կեղեքելով, լույս էին արարում ժողովրդի համար նրա հանճարները: Եվ ժողովուրդը դարեր շարունակ գալիս խոնարհվում էր ոչ թե սրբավայրի վերածված անձավների սառը կամարներին, այլ իր այն հանճարների առաջ, որոնք լույս էին արարում քարայրների խավարում:

# ԵՐՎԱ



ՍԵՐԳԵՅ
ՎԱՐԴԱՆՅԱՆ

Երվանդ Վերջին թագավորը մ.թ.ա. 220 թվականին գահ բարձրանալով, ըստ Խորենացու, ձեռնարկում է մեծածավալ շինարարություն: Եվ քանի որ Արաքսի հունի փոփոխման հետևանքով արքայանիստ Արմավիր քաղաքը մնացել էր առանց ջրի, արքան Այրարատյան նահանգի Երասխաձոր գավառում, Արաքսի և Ախուրյանի միախառնման տեղը՝ բլրի վրա հիմնում է իր նոր մայրաքաղաք Երվանդաշատը: Անկասկած, նոր մայրաքաղաքի հիմնումը ուներ նաև ռազմաքաղաքական նշանակություն: Արքան պարսպապատում է բլուրը, միջնաբերդը նույնպես օղակում է բարձր պարիսպներով, որոնք ունեին պղնձակոփ և ամրակուռ դարպասներ: Նա գետնուղիներ է անցկացնում՝ քաղաքի պաշարման դեպքում գետից ջուր առնելու հնարավորություն ունենալու համար:

Երվանդ Դ-ի գահը, սակայն, երերուն էր, և նա իր անձի ապահովության ու դավադրություններից խուսափելու համար, միջնաբերդում բազմաթիվ գաղտնի որոգայթներ էր շինել տալիս:

Նոր մայրաքաղաքից մի փոքր հյուսիս, արքան կառուցում է նաև Երվանդակերտ դաստակերտը, որտեղ բնակվում էին թագավորական ընտանիքը, նրանց մերձավորները, թիկնապահներն ու սպասավորները:

Այս դաստակերտը, ըստ Խորենացու, Երվանդ Վերջին թագավորի ամենանազողտրիկ կառուցումներից էր. «Ինձ համար քաղցր է պատմել նաև գեղեցիկ Երվանդակերտ դաստակերտի մասին, որ նույն Երվանդը շինեց գեղեցիկ և չքնաղ հորինվածքով: Որովհետև մեծ հովտի միջին մասը լցնում է բնակչությամբ և պայծառ շինություններով, լուսավոր, ինչպես աչքի բիբը, իսկ բնակության շուրջը կազմում է ծաղկանոցներ և բուրաստաններ, ինչպես բիբի շուրջը աչքի մյուս բոլորակը: Իսկ այգիների բազմությունը նմանվում է խիտ արտևանունքի գեղեցիկ գծին, որի հյուսիսային կողմի կամարաձև դիրքը իսկապես համեմատվում էր գեղեցիկ կույսերի հոնքերին: Իսկ հարավային կողմից հարթ դաշտերը (հի-

# ՆԴԱՇԱՏ

չեցնում էին) ծնողների գեղեցիկ ողորկությանը։ Իսկ գետն իր երկու ափերի բարձրություններով պատկերանում էր մի բերան, իր երկու շրթունքներով»։

Երվանդը նոր մայրաքաղաք էր տեղափոխել նաև արքունի ողջ հարստությունն ու Արմավիրի բնակչության մի մասը։ Քաղաքական մթնոլորտ շիկացած էր, թագավորից դժգոհ էին նախարարները ու ժողովուրդը։ Երկյուղ կրելով, որ զոհաբերությունների ու հեթանոսական տոների ժամանակ անհնարին կլինի ապահովել իր անվտանգությունը, Երվանդը մեհյանների ճոխությունն ու աստվածների արձանները, կուռքերն ու բագինները տեղափոխում է Երվանդաշատից 40 ասպարեզ հեռու, Ախուրյան գետի ափին կառուցած Բագարան փոքրիկ քաղաքը և իր Երվազ եղբորն էլ քրմապետ է նշանակում, տալով նրան 500 ծառա։

Ահա, քաղաքական այսպիսի լարված պայմաններում էր, որ ծագեց Արտաշեսի պատերազմը Երվանդի դեմ։ Արտաշեսը Սելևկյան Անտիոքոս Գ-ի զորավարներից էր։ Նա մ.թ.ա. 200 թվականի գարնանը պատերազմ է սկսում Երվանդի դեմ։ Երվանդը շտապով զորք է գումարում, օգնություն ստանում Վրաստանից, Միջագետքից ու Կեսարիայից, չբավարարվելով դրանով՝ վարձկաններ էլ է հրավիրում։ Նաև առատորեն գանձեր է բաժանում հայոց նախարարներին, որ օրհասի պահին չլքեն իրեն, այնուհանդերձ նրանցից շատերն են անցնում Արտաշեսի դրոշի տակ։ Ճակատամարտը տեղի է ունենում մայրաքաղաքից 300 ասպարեզ հեռու, Երվանդավանի մոտ։ Պարտություն կրելով, Երվանդը քաշվում է իր մայրաքաղաքը և փակվում այնտեղ։ Արտաշեսը նրան հետապնդելով, գալիս պաշարում է քաղաքը, որը շուտով անձնատուր է լինում, սպանվում է Երվանդը։ Արդեն թվում էր, թե իրականանում է Սելևկյանների երազանքը՝ վերացնել Հայաստանի անկախությունը։ Հայոց աշխարհի արևմտյան մասում ստրատեգոս՝ ռազմավարչական կառավարիչ է նշանակվում Զարեհը, իսկ արևելյանում՝ Արտաշեսը։ Բայց իր հաշիվներում Անտիոքոս Գ-ը սխալ դուրս եկավ։

Շուտով, մ.թ.ա. 190 թվականին, Արտաշեսը Հայաստանը անկախ հռչակեց, դարձավ Արտաշեսյան արքայատան հիմնադիր և կառուցեց հայոց չորրորդ մայրաքաղաքը՝ Արտաշատը։

Մինչև չորրորդ դարը Երվանդաշատը մնում է Հայաստանի մեծագույն քաղաքներից, սակայն պարսից Շապուհ Բ-ի զորքերը 360 թ. ավերեցին այն և բնակչությանը գաղթեցրին։ Հետագայում Երվանդաշատը անշքանալով, վերածվում է փոքրիկ բնակավայրի։ Այսօր էլ Հոկտեմբերյանի շրջանի Երվանդաշատ գյուղի մոտ պահպանվել են նրա պարիսպների, տարբեր շինությունների, ճարտարապետական համալիրների հետքերը, միջնադարում կառուցված երկու եկեղեցու փլատակները և խաչքարեր։

Արքունի ամրոց Երվանդակերտին նույնպես բախտը չժպտաց։ Որոշ ժամանակ դառնալով Կամսարական նախարարական տան սեփականությունը, նա նույնպես բաժանեց Երվանդաշատի ճակատագրի հարվածները։ Բոլորովին այլ բախտ ունեցավ Բագարանը։ Նրան վիճակված էր դառնալու հայոց հինգերորդ մայրաքաղաքը։



Վաղ առավոտյան Մոսկվայից Շերեմետևոյի օդանավակայան տանող ամայի խճուղում վթարվել էր մի «Ժիգուլի» ավտոմեքենա: Վարորդը զոհվել էր: Ջարդված ավտոմոբիլը մնացել էր ճանապարհին: Երկրորդ մեքենան փախել էր:

Դեպքի վայրը մեկնեցին միլիցիայի աշխատակիցները և քննիչը: Նրանք մի հատուկ ճամպրուկ ունեին, որի մեջ կային փորձասրվակներ, ունելիներ, խոշորացույց, մագնիս, հանցագործի հետքերի հայտնաբերման համար նախատեսված փոշիներ և իրեղեն ապացույցներ հավաքելու բազմաթիվ այլ գործիքներ:

Քննիչը վթարի վայրում ժողովում էր ապակու բեկորներ, ներկի կտորներ, թելիկներ...



Այստեղ մենք մանրամասն չենք պատմի, թե հետո ինչ արեց քննիչը: Դա ուրիշ խոսակցության նյութ է: Միայն կարող ենք ասել, որ հարցափորձից, համադրումներից, ծանր ու թեթև անելուց հետո քննիչը ենթադրեց, որ հանցագործը «ԶԻԼ» ավտոմեքենայի վարորդ Ա.-ն էր: Սակայն վկաներ չկային: Առաջ նման դեպքում կարող էին և գործը կարճել, քանի որ չկան համոզիչ ապացույցներ: Բայց այժմ ֆիզիկոսները, քիմիկոսները, կենսաբանները գիտական բարդ փորձերի միջոցով օգնում են գտնելու անհրաժեշտ ապացույցները:

Փորձագետ-քիմիկոս Ալեքսեյ Գվիտոևի հետ ներքին գործերի գլխավոր վարչության գիտատեխնիկական բաժնի լաբորատորիայում ենք: Մեր շուրջը փորձանոթներ են, փորձասրվակներ, այրիչներ, ծալովի պահարաններ՝ առարկաներ, որոնք մեզ ծանոթ են դպրոցից, քիմիայի դասերից: Բայց կան նաև առեղծվածային, անծանոթ գործիքներ՝ մետաղապատ սարքավորումներ: Ալեքսեյ Գվիտոևին են հանձնվել վարորդ Ա-ի գործի վերաբերյալ նյութերը: Դրանցից նա հանում է «ԶԻԼ» մակնիշի բեռնատարի լուսարձակի ապակու բեկորներ, որ գտել են «Ժիգուլիի» ներսում: Ներկի փշրանքներ, որ վերցվել են մարդատար մեքենայի ծռմռված ծալովի կափարիչից: Կտորի մազմզուկներ, որ խոշորացույցով հայտնաբերվել են դռան բռնակին: Այժմ փորձագետը պետք է պարզի՝ արդյո՞ք, հանցանքի վայրում գտնված ապակու փշուրներն ու ներկը պատկանում են վարորդ Ա-ի բեռնատարին: Առանձին փաթեթում վարորդի բրդե ձեռնոցներն են, որ քննիչը գտել է «ԶԻԼ»-ի խցիկում: Փորձագետը պետք է ճշտի՝ արդյո՞ք դրանց մազմըզուկներն էին «Ժիգուլիի» բռնակին:

Գվիտոևը ուշադիր զննեց ապակու կտորները: Արդեն արտաքին տեսքով իսկ կարելի էր ենթադրել՝ պատուհանի՞ ապակուց է, շշի՞, թե՞ լուսարձակի: Սակայն սոսկ արտաքին զննումով քիմիկոսը չի բավարարվում: Նա վերցնում է նույն քաշի երկու բեկորներ՝ կասկածի տակ առնըված մեքենայից և դեպքի վայրից, դըրանք տեղավորում հատուկ լուծույթ պարունակող անոթներում, տաքացնում: Ապակիները հալվում են: Փորձագետը մերթ մեկ, մերթ մյուս ապակու լուծույթը տեղավորում է գրաֆիտային վառարանում:

Վառարանը մարդու մատի հաստության գրաֆիտե ձող է, բայց ձողը փակված է այնպիսի հարմարանքում, որը կարող է տաքացնել մինչև 2000 աստիճան: Այսպիսի ջերմության պայմաններում ապակու լուծույթը քայքայվում, վերածվում է «ատոմային գոլորշու»՝ նյութերի առանձին ատոմների: Այս «ատոմային գոլորշու» միջով «շամփրում են» որոշակի երկարության ալիքի լույսի ճառագայթ: Եթե գոլորշու մեջ, ասենք, երկաթի մոլեկուլներ կան, ապա այդ մոլեկուլները կլանում են լույսը: Սարքը ցույց է տալիս՝ երկաթ կա՞, և նույնիսկ թե այդ ապակու մեջ քանի՞ տոկոս է կազմում: Նույն կերպ պարզում և հաշվում են անագի, ստրոնցիումի, երկաթի այն աննշան քանակությունները, որոնք ապակին հալելիս ավազի հետ խառնվում են հալած զանգվածին:

Ուսումնասիրությունն ավարտված է, և քիմիկոսը եզրակացնում է՝ ապակիները պատրաստված են ապակե նույն զանգվածից, ու շատ հավանական է, որ դրանք նույն լուսարձակի կտորներն են:

Եվ այսպես՝ հանցանշան № 1: Ալեքսեյ Գվիտոևը գրեց եզրակացությունը և ձեռ-

նամուխ եղավ ներկի նմուշների հետազոտությանը:

Փորձագետին առաջին հերթին հետաքըրքրում է վերին շերտը, գույնը, քիմիական բաղադրությունը:

Մանրադիտակի տակ նա անջատում է վերին շերտը, մանրում է, խառնում բրոմային կալիումի հետ, մամլում, դարձնում հաբ: Հաբը լուսավորում են ինֆրակարմիր ճառագայթներով (բրոմային կալիումը անց են կացնում ինֆրակարմիր ճառագայթները, դրանց մեջ դառնալով թափանցիկ), և սարքը հաղորդում է, թե ինչպիսին է այդ ներկը:

Եվ ի՞նչ է պարզվում: Մեզ հետաքրքրող ներկերը միանման էին: Ահա և № 2 հանցանշանը:

Մնացին ձեռնոցները: Բրդյա, ձեռքի գործած, տարբեր գույնի թելերից: Քիմիկոսը ունելիով թելիկներից նմուշներ է պոկում և զննում մանրադիտակով: Նա պետք է պարզի մանվածքի բաղադրությունը, գույնը և թե ինչից է կեղտոտված: Մանրադիտակի տակ երևում է, որ մանվածքը բրդից է, իսկ միկրոքիմիական ռեակցիայի լուծելիությունը ցույց է տալիս, որ կապրոնի խառնուրդ կա: Բոլոր թելիկներից ներկանյութերը մաքրում են և տեղավորում սպեկտրալուսարձակի մեջ, որը հուշում է քիմիկոսին՝ ներկանյութերը համապատասխանում են: Մանրադիտակի տակ ձեռնոցների և «Ժիգուլիի» բռնակից վերցված թելիկների վրա փորձագետը նկատեց ինչ-որ բույսի մանրագույն մասնիկներ: Ի՞նչ բույս էր: Նա չգիտեր: Հարկ եղավ օգնության կանչել բուսաբանին: Նա պարզեց, որ երկու դեպքում էլ կռատուկի մասնիկներ են: Սա էլ № 3 հանցանշանը:

Եվ ահա բոլոր հետևությունները գըրանցված են: Այժմ դատարանը պետք է որոշի՝ արդյո՞ք պատահական զուգադիպություններ են դրանք: Փորձագետն ու քննիչը կարծում են, որ պատահական չեն:

Հրաժեշտից առաջ ինձ տարան գիտատեխնիկական բաժնի բոլոր լաբորատորիաները: Ցույց տվեցին, թե ինչպես են համեմատում մատնահետքերը, ինչպես են ինֆրակարմիր ճառագայթներով կարդում ջնջված գրառումները, ինչպես են տարբերում կեղծված փաստաթղթերն ու կնիքները իսկականից... Մի խոսքով, անում են հնարավոր ամեն բան, որ ոչ մի հանցագործություն չբացահայտված չմնա:

**Մ. ՄԱՏՎԵԵՎԱ**




**Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ**

Սվետան ամեն օր դպրոց էր գալիս իր հոր «Զապորոժեցով», Տանյան ամեն օր դպրոց էր գալիս իր հոր սև «Վոլգայով», Վիտյան հայտնվում էր իր հոր հիմնարկային «Իկարուսով», Սաշան գալիս էր մի ահռելի «Կամազով», զանգից մեկ

բույն առաջ դպրոցի առջև կանգնում էր ասֆալտ կրող վիթխարի ինքնաթափը ու վարորդ հոր կողքից ինքնագոհ ցած էր թռչում Բորյան։

Նրանց բոլորի հայրերը, ինչ եմ ասել, հայրեր էին, միայն Օլեգի հայրն էր որ... Օլեգը տանը շարունակ տրտնջում էր, գանգատվում մորը. «Մեր դասարանում ոչ մեկը դպրոց ոտքով չի գալիս, ինձանից բացի... Հայրերն, ա՛յ, այդպիսին կլինեն»։ Մայրը լռե՛ց, լռե՛ց, մի օր էլ ասաց. «Հայրիկդ առավոտ շուտ է գնում աշխատանքի, քեզ դպրոց տանել չի կարող, բայց այ, այսօր, դասերդ հենց վերջանան, դասարանից դուրս գաս, կգա ու քեզ իր ուղղաթիռով տուն կբերի, թող ընկերներդ տեսնեն ու մտածեն, ա՛յ թե ում հայրն է հայր»։

Օլեգն այդ օրը թև առած դպրոց գնաց։ Վերջին դասին այդեն էլ համբերել չէր կարողանում, ասես ասեղների վրա նըստած լիներ։ Վերջապես զանգը հնչեց։ Ուսուցչուհին ոտը դասարանից դեռ դուրս չէր դրել, Օլեգը թռավ նստարանի վրա ու բղավեց.

— Երեխե՛ք, սպասեցե՛ք... Լսե՛ք, թե ինչ եմ ասում...

Բոլորը զարմացած շրջվեցին նրա կողմը, լսեցին նրան, ավելի զարմացան ու նրա ետևից վազեցին դուրս։

Ծառով դպրոցի ասֆալտապատ ընդարձակ բակում, Օլեգի համադասարանցիների պայուսակները կողք-կողքի շարվեցին, մի հսկայական «Т» տառի տեսքով։ Ամբողջ 5-րդ դասարանը, գլուխները վերև տնկած, նայում էին երկնքին։ Վերջապես լսվեց շարժիչի դռռոց, գնալով սաստկանում էր դռռոցը, ահա և երկնքում հայտնվեց Օլեգի հոր ուղղաթիռը։ Ուղղաթիռը ցածրանալո՛վ, ցածրանալո՛վ, սկսեց խուզով թռիչքով պտտվել դպրոցի վերևը, պտտվե՛ց, պտտվե՛ց, ու մեկ էլ անսպասելի նորից բարձրություն վերցրեց։ Օլեգի սիրտը մարեց։ Նույն պահին երեխաների ոտքերի մոտ ուղղաթիռից թփալով մի բան ընկավ. դա այնպիսի մի սովորական պայուսակ էր, որպիսին կրում են օդաչուները։ Օլեգը բարձրացրեց պայուսակն ու միջից հանեց քառածալ մի թուղթ, որի վրա գրված էր.

«Գնա՛ ոտքով, դա օգտակար է։

Քո հայրիկ»։

Փոխադրությունը՝ ԾԱԽՐԱՏ ԳԱՆԻԵՎԻՑ



Միջնադարյան հայկական առակներից մեկում սոսի ծառը քննադատվում է այն պատճառով, որ, ճիշտ է, խոշոր ու գեղեցիկ է, բայց ոչ համեղ պտուղներ է տալիս, ո՛չ շինանյութ է, ո՛չ էլ որպես վառելիք կարող է օգտագործվել։ Կեչին և լաստենին՝ նույնպես։ Մինչդեռ սոճին, կաղնին, եղևնին և ընկուզենին հրաշալի փայտանյութ են տալիս, որը խիստ բարձր է գնահատվում։ Օրինակ, եղևնու որոշ տեսակների փայտանյութը օգտագործվում է երաժշտական նուրբ գործիքներ պատրաստելու համար։ Հայտնի է, որ այդպիսի փայտից էին իրենց հռչակավոր ջութակները պատրաստում իտալացի հայտնի վարպետներ Դա Սալոն, Մաջինին և կրեմոնյան դպրոցի վարպետները՝ Անդրեա և Նիկոլլո Ամատիները, Գվարներին և հռչակավոր Անտոնիո Ստրադիվարիուսը։ Ամենաընտիր կահույք պատրաստվում է հռչակավոր կարմրածառից (կենի), ամերիկական սև ընկուզենուց և մեր սովորական ընկուզենուց։ Այդ պատճառով կենու լայնածավալ անտառները սկսեցին մասսայաբար հատել, և դրանք իսպառ կոչնչանային, եթե մարդիկ ժամանակին չսթափվեին և չդադարեին դրանց հատումը։ Հայաստանում ևս հին դարերում կենին ընդարձակ տարածություններ է զբաղեցրել։ Ներկայումս մեր հանրապետությունում այդ արժեքավոր ու հազվագյուտ ծառատեսակը մնացել է միայն Դիլիջանի արգելանոցում, Ախնաբաղ վանքի մոտ, ընդամենը 40 հեկտար տարածության վրա, ինչպես նաև Նոյեմբերյանի և Ղափանի շրջաններում։

Ամերիկան հայտնաբերելուց հետո եվրոպացիների ուշադրությունը գրավեց սև ընկուզենին, որը այդ ժամանակաշրջանում ամենատարածված անտառատեսակներից էր։ Երբ պարզվեց, որ սև ընկուզենու բնափայտը խիստ արժեքավոր է ամենաընտիր կահույքի համար, սկսվեց այդ անտառների զանգվածային ոչնչացումը։ Մի քանի հարյուր տարվա ընթացքում հսկայական փայտանյութ տեղափոխվեց Եվրոպա։ Հյուսիսային Ամերիկայի նախկին անտառապատ հսկա տարածությունները իսպառ մերկացան և ուժեղացված էրոզիոն պրոցեսների հետևանքով միանգամից անպետք դարձան գյուղատնտեսության համար նույնպես։ Կահույքի բարձրորակ փայտանյութ է նաև սովորական (հունական) ընկուզենին։ Այդ ծառատեսակի անտառները ինչ-որ մի ժա-




մանակ հսկայական տարածություններ են զբաղեցրել Բալկանյան թերակղզում, Փոքր Ասիայում, Միջին Ասիայում և Չինաստանում: Սակայն սովորական ընկուզենին նա չխուսափեց մասսայական ոչնչացումից:

Արժեքավոր փայտանյութ հանդիսացող ծառերն աչքի են ընկնում գույնով, նախշերով, ամրությամբ և ծանրությամբ: Սովորաբար ծանր բնափայտը ունենում է նաև արժեքավոր ֆիզիկամեխանիկական առանձնահատկություններ և մասսայաբար օգտագործվում է տեխնիկայի ասպարեզում: Դրանք երբեմն հաջողությամբ փոխարինում են մեքենաների մետաղյա մասերին: Այս տեսանկյունից հատկապես աչքի են ընկնում երկաթյա կեչին, երկաթածառը և պիրաթիներան:

Աշխարհի ամենածանր բնափայտն ունի Բրիտանական Գվինեայում աճող պիրաթիներա ծառատեսակը, որի մեկ **խորանարդ** դեցիմետրը կշռում է 1500 գրամ: Ավելի թեթև է հոչակավոր սև ծառը՝ 1170 գրամ է կշռում մեկ դեցիմետրը և կարմիր ծառը՝ 720 գրամ: Դրանց հակառակ՝ կան նաև շատ թեթև ծառեր. խցանային կաղնու մեկ **խորանարդ** դեցիմետրը կշռում է ընդամենը 210 գրամ: Աշխարհում ամենաթեթև փայտանյութը տալիս է օխրոմա ծառը: Նրա մեկ **խորանարդ** դեցիմետրը կշռում է 120 գրամ: Դա նշանակում է, որ այս բույսի հինգ **խորանարդ** մետր փայտանյութ պարունակող հսկայական գերանը կարելի է դնել ուսին ու համարձակ քայլել առանց ծանրություն զգալու: Կան դրանից էլ ավելի թեթև բնափայտ ունեցող ծառեր, սակայն մրցակցությունից դուրս են մնացել, քանի որ գործնական կիրառություն չունեն, ամրությամբ զիջում են օխրոմային, կամ էլ չափազանց հազվադեպ են հանդիպում:

Իսպանացիները օխրոմային անվանում են **«բալսա»**, որը նշանակում է «լաստ»: Նավաշինության մեջ այլ տեսակի ծառերի փաներայով պատած **բալսայի** փայտանյութը ոչ միայն ապահովում է լավ մեկուսացումը, այլև նավի իրանի ծանրությունը պակասեցնում է հարյուրավոր տոննաներով: Նրա սպունգանման կառուցվածքը հնարավորություն է տալիս լայնորեն օգտագործել որպես մեկուսիչ նյութ: **Բալսայի** բնափայտը մարում է վիբրացիան, որի շնորհիվ նրանից բարձիկներ են դնում ծանր մեքենաների տակ, որպեսզի ցնցումները չվնասեն շենքերին: **Բալսայից** պատրաստած պատերը և առաստաղները մարում են ձայնային ալիքները, բնակիչներին ազատելով աղմուկից:

**Բալսայից** ավելի թեթև է կուբայական էշինոմենեն (ամբաչ): Նա երեք անգամ թեթև է **բալսայից**, 24 անգամ՝ ջրից: Դրա մեկ խորանարդ մետրը կշռում է 440 գրամ: Սակայն այդ ծառերը գործնական կիրառություն չունեն: Ավելի թեթև փայտանյութ ունեցող ծառերից անհրաժեշտ է հիշատակել միայն ամբաչը, որը աճում է Վիկտորիա լճի լողացող կղզիներում:

Մի մարդ՝ առանց դժվարության կարող է իր ուսերի վրա կրել ամբաչից պատրաստված մի ամբողջ լաստ, որը նախատեսված է 6 մարդու տեղափոխման համար: Ամբաչը արտակարգ արագ է աճում խաղաղ լճախորշերում, և քանի որ նրա բոլոր արմատները գտնվում են ջրի տակ, քամին ու ջրի հոսանքը հաճախ նրա ամբողջ թփերը պոկում ու քշում են, որոնք հետո հեշտությամբ են ամրանում նոր վայրերում: Այսպիսով, երբեմն Նեղոսի վրա առաջանում են արգելք-բուսուտներ և խանգարում նավագնացությանը:

**Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
**կենսաբանության դոկտոր**

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ







«ՀԵՔԻԱԹ»
Հարությունյան Մարինե
10 տ., № 3 դպրոց, 4-րդ դաս.

«ՎԱՐԺԵՑՆՈՂԸ»

Սարգսյան Արմեն
10 տ., № 1 դպրոց, 4-րդ դաս.

«ՊԱԼԱՏՈՒՄ»

Սարգսյան Արմինե
11 տ., № 3 դպրոց, 5-րդ դաս.

Երբ Եղեգնաձորի № 1 և № 3 դպրոցներում նկարչություն սկսեց դասավանդել Գևորգ Պողոսյանը, աշակերտների վերաբերմունքը դեպի այդ առարկան մեկեն փոխվեց: Նրանք այժմ առանձին սիրով են սպասում նկարչության դասերին: Տանը, ազատ ժամերին, նրանցից շատերի սիրելի զբաղմունքը դարձել է նկարելը: Նրանք օրն-օրին ավելի ու ավելի լավ են նկարում:

Ցանկացողները կարող են դիտել Գ. Պողոսյանի սաների նկարները, որոնք ցուցադրված են «Պիոներ» ամսագրի խմբագրատանը:



Մողեսների «համաշխարհային տիրապետությունը» սկսվել է 300 միլիոն տարի առաջ և գոյատևել համարյա 135 միլիոն տարի: Տարօրինակ մողեսները գրավել էին նախապատմական անտառները և դաշտերը, վխտում էին ծովերում ու ճախճում օդում: Բազմազան և բազմապիսի էին՝ սկսած ճագարաչափ գազաններից մինչև 70 տոննանոց հսկաները, օժտված էին հզոր պոչով, ահագին մարմնով, երկար վզով և անհամեմատ փոքր գլխով: Նրանց երկարությունը հասնում էր մինչև 23, բարձրությունը 12 մետրի, այսինքն առանց հատուկ ջանքերի կարող էին ներս նայել ժամանակակից շենքերի 4-րդ հարկի պատուհաններից: Հետագայում նախապատմական մողեսներին գիտնականները կոչեցին դինոզավրեր: Նրանցից թե խաղաղ խոտակերները և թե ահեղ գիշատիչները չունեին մրցակիցներ: Բայց ահա կավճե ժամանակաշրջանի վախճանի հետ անհետացան նաև նրանք: Այդ բնաջնջումը տեղի ունեցավ գուցե ոչ մի օրվա ընթացքում, բայց հավանաբար հանկարծակի, քանի որ առանձին «մահվան դաշտերում» հայտնաբերվել են միլիոնավոր ծեր և մատղաշ դինոզավրերի բրածո կմախքներ: Նմանօրինակ կոտորածները անշուշտ կարող էին գոյանալ միայն անսպասելի աղետների հետևանքով: Իսկ թե ինչու՞ նրանք անհետացան, մինչև այսօր էլ հանելուկ է:

Ոմանք այդ բացատրում են տիեզերական աղետներով և համաճարակներով, ուրիշները կլիմայի կտրուկ փոփոխությամբ, կամ թե նրանց ձվերի ոչնչացմամբ նորելուկ կաթնասունների կողմից: Վերջերս մեղադրեցին նաև մարդուն, որի հետքերի դրոշմները իբրև թե հայտնաբերվել են դինոզավրի հետքերին զուգահեռ:

Ընդհանրապես մարդկանց դուր են գալիս աղմուկ առաջացնող լուրերը՝ հիշենք թեկուզ հաղորդումները «ձյունեմարդու մասին», որին իբրև թե հանդիպել են նույնիսկ Պաղստանում, կամ Լոխ Նեսին, այդ հսկա կենդանի բրածոյի առկայությունը շոտլանդական լճում: Գրում էին, որ Լոխ Նեսին հաճախ դուրս է գալիս ջրի երեսը, պղպջակներ թողնում և ապա նորից սուզվում:

Սովետական կետորսները 1973 թվին հաղորդեցին, որ հանդիպել են «Ձիու գլխով» խորհրդավոր կենդանու, իսկ 1978 թվին նկատել են 70 մետրի վրա «բադի գլխով և ափսեաչափ աչքերով» կենդանու, ըստ ոմանց կենդանի պլեզոզավրի կամ մեզոզավրի:

1977 թվին ճապոնական «Ցույո-Մարու» նավի ձկնորսները Նոր Զելանդիայի մոտերքը 300 մետր խորությունից դուրս քաշեցին մի տարօրինակ կենդանու 13 մետրանոց քայքայված դիակ: Աֆրիկայի բընիկները պատմում են Կոնգոյի ճահճաբնակ կենդանի դինոզավրի մասին: Բայց պետք է նշել, որ այս բոլոր հանելուկները վերջիվերջո անհերքելի և ստույգ գիտական ապացույցների կատակման հետեվանքով գտնում են իրենց համեմատաբար պարզ լուծումը:

Օրինակ՝ ճապոնացիների որսած «անհայտ» կենդանու մնացորդներում գիտնականները հայտնաբերեցին շնաձկներին հատուկ սպիտակուց, իսկ այդ ջրերում հսկա շնաձկներ հազվագյուտ չեն և մեր «Էկվատոր» նավն էլ 71 թվին 500 մետր խորությունից որսացել է 14 մետրանոց ու 15 տոննա կշիռ ունեցող շնաձուկ: Շոտլանդական «հրաշքն» էլ գտավ իր բացատրությունը: Լճի հատակում հայտնաբերեցին ընկած եղևնիների բներ, որոնց պարունակած ձյութը քայքայվելով, առաջացնում է գազի բշտեր, սրանք էլ եղևնու բները վեր են հանում ջրի երեսը, որտեղ գազի պղպջակները շաչյունով հեռանում են, իսկ ծանրացած բները նորից իջնում են հատակ՝ ստեղծելով կենդանի հրեշի պատրանք:

Վերջերս Կոնգոյից ձեռնունայն վերադարձավ կենդանի դինոզավր փնտրող ամերիկյան գիտարշավը: Չնայած անհաջողությանը, նրա մասնակիցներից ոմանք տրամադրված են լավատեսորեն և հույս ունեն անծայրածիր ճահիճներում հայտնաբերելու 100 միլիոն տարի առաջ անհետացած դինոզավրերի ժառանգներին:

Ինչ որ է՝ փնտրումները շարունակվում են:

**Վ. ԽԱՉՈՅԱՆ**
կենսաբանության թեկնածու

Բիրմացիները կարող են հպարտանալ բնության պահպանությանը նվիրված աշխարհի հնագույն օրենսդրությամբ։ Բնության պահպանմանը կոչ անող օրենքները հրապարակվել են դեռևս Ալաունսիտխու թագավորի օրոք, որը կառավարել է 12-րդ դարի սկզբին։ «Կարմիր գիրք» ասելով մենք հասկանում ենք անհետացման եզրին գտնվող կենդանիների և բույսերի թվարկումը։ Հին բիրմացիներն ունեին իրենց «Կարմիր գիրքը», որ ստեղծվել է հարյուրավոր տարիներ առաջ։ Սալե քաղաքում տեղադրված այդ քարե կոթողի վրա մակագրված է. «Ես, ամենազոր ինքնակալս երկրի և պահապանս հավատի, հրամայում եմ՝ պատժել նրանց, ովքեր կհամարձակվեն վնաս հասցնել այստեղ հիմնադրված արգելավայրի կենդանիներին և թռչուններին»։

Մինչև այժմ էլ Բիրմայում հետևում են էկոլոգ-թագավորի ցուցումներին։ Ներկայումս երկրում գոյություն ունեն շուրջ 20 արգելոցներ, իսկ հանրապետության կենտրոնական մասում հիմնվում է առաջին ազգային պարկը։



Շվեյցարիայում վաճառքի են հանվել էլեկտրական անջատիչներ, որոնք վառում կամ մարում են լամպերը ծափ տալու միջոցով։ Կիրառելով այդ սկզբունքը, տեղի ֆիրմաները մշակել են էլեկտրական հատուկ լապտերներ, որոնք սնվում են մեկուկես վոլտանոց մարտկոցներից։ Դրանք կարող են ծառայել որպես լույսի անջատ պահեստ կամ ազդանշանային աղբյուրներ վթարային դեպքերում, երբ վնասվի հիմնական էլեկտրացանցը։

Այդպիսի լապտերիկները առանձնապես դուր են գալիս երեխաներին, որոնք վախենում են մթությունից։ Երեխան գիտի, որ եթե մթից վախենա, պետք է անմիջապես երկու անգամ ծափ զարկի, և միանգամից ննջարանում կվառվի լույսը։






Ոսկե ձկնիկները, իսկ ավելի ստույգ՝ արծաթավուն ծածանները, որոնք այնքան գրավում են ակվարիումի սիրահարներին, հայտնի են հնուց ի վեր։ Դեռևս մեր թվականության առաջին հազարամյակի վերջին չինացիները արհեստական եղանակով բուծում էին դրանց։ Այդ ծածանները Եվրոպայում հայտնվեցին 17-րդ դարում և միանգամից դարձան շքեղության խորհրդանիշ։ Տառացիորեն ոսկու գին ունեցող այդ ձկնիկներից կարող էին ձեռք բերել միայն ազնվականները։ Հարյուր տարի առաջ ծածանիկներով հետաքրքրվեցին փարիզեցի պճնամոլները։ Նրանք կրում էին այդ ձկները... ականջներին։ Ակվարիում էին ծառայում ապակե պստլիկ գնդերը, որոնք ամրացվում էին ականջօղերին։ Արծաթավուն ծածանները օգնեցին և գիտնականներին՝ նրանցով ճշտում էին անզգայացնող միջոցների ազդեցությունը։

Մեր օրերում կենսաբաններն ավելի հաճախ են դիմում ոսկե ձկնիկներին։ Պարզվել է, որ դրանք հետազոտության հիանալի առարկա են։ Օրինակ, ծածանների տեսողական ապարատը հնարավորություն է ընձեռում մանրամասն ճշտելու, թե ինչպիսի կապի մեջ են ձկան աչքի ցանցաթաղանթը և նյարդային կենտրոնները։



ՍԻՎՐԵՆ ԱՐՇԱԿՈՒՆԻ

Սկիզբ չունեմ,
Չունեմ վերջ,
Առաջին տառն
Իմ անվան՝
Իմ պատկերն է,
Ինձ նման

●

Ձեռքեր ունի,
Ափեր չունի.
Աչքեր ունի,
Կոպեր չունի։

●

Ունի մորուք ու մի պոչ,
Ճնչավո՞ր է… կասեմ՝ ո՛չ։

●

Ունեմ-չունեմ՝ երկու թև.
Մեկը ճերմակ, մեկը՝ սև,
Մեկը երկար, մեկը կարճ,
Մեկը մեկից ետ առաջ։

●

Ահա մի պապ ու մի թոռ,
Երկու որդի, երկու հայր.
Եվ միասին բոլորը
Քանի՞սն եղան, թե գտա՞ր…




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ՝ 77806



Այս տարի լրանում է «Պիոներ» ամսագրի հիմնադրման 60-ամյակը: Այդ առիթով խմբագրությունը հայտարարում է մանկական ստեղծագործության մրցույթ (բանաստեղծություններ, պատմվածքներ, գեղանկար, գրաֆիկա, գոբելեն, խեցեգործություն, փայտ, մետաղ, քանդակ):

Ուշագրավ աշխատանքների հեղինակները կպարգևատրվեն դիպլոմներով և հուշանվերներով:

Մրցույթի վերջնական ժամկետը սեպտեմբերի 15-ն է:

«ՊԻՈՆԵՐԻ» խմբագրություն



Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ա. (պատ. քարտուղար)

Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 10.12.1982 թ.: Ստորագրված է տպագրության 17.2.1983 թ.: ՎՖ 11241: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 70070: Պատ. 2612: Գինը՝ 15 կ.:

Сдано в набор 10.12.1982 г. Подписано к печати 17.2.1983 г. Формат 70×100 1/16. ВФ 11241. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2.92 усл. печ. листа, 3,0 уч-изд. листа. Тираж 70070. Заказ 2612. Цена 15 коп.